ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

# Քո ընկերոջ ընկերն եմ ես...

Բուլղարացի իմ ընկերը
Ընկեր ունի Հունաստանում:
Հունաստանցի այդ ընկերը
Ընկեր ունի Լեհաստանում:
Լեհաստանցի այդ ընկերը
Ընկեր ունի Ռուսաստանում:
Ռուսաստանցի այդ ընկերը
Ընկեր ունի Հնդկաստանում...

Ես կանգնել եմ քարտեզի դեմ,
Նայում, նայում եմ ու նայում
Եվ չեմ կարող աչքս կտրել
Մոլորակից մեր հմայուն:
Եթե մի օր ձեռքս մեկնեմ,
Բռնեմ ձեռքը իմ ընկերոջ,
Իսկ նա էլ իր ձեռքը մեկնի,
Բռնի ձեռքը իր ընկերոջ,
Մեր ձեռքերի մեջ կհայտնվի
Այս գեղեցիկ աշխարհը ողջ...

Ու մտովի խախտում եմ ես
Սահմանները մոտ ու հեռու,
Կտրում եմ ծով ու ցամաքներ,
Շրջում գյուղ ու քաղաքներում.
Ում էլ տեսնում եմ իմ ճամփին,
Ողջունում եմ ծանոթի պես.
— Ահա իմ ձեռքը, բարեկամ,
Քո ընկերոջ ընկերն եմ ես:



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015. Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 8 • 86



Հանձնված է տպագրության 30.V.86 թ.: Ստորագրված է տպագրության 01.VIII.86 թ.: ՎՖ 06819: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 69182: Պատվեր՝ 1161: Գինը՝ 15 կոպ.:

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:

Сдано в набор 30. V. 86 г. Подписано к печати 01. VIII. 86 г. Формат 70×100 1/16. ВФ 06819. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 69182. Заказ 1161. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Շապիկը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՁՕՂԼՅԱՆԻ



# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԱՄԱՌ

## Պաղ աղբյուրի մոտ

Լուսանկարները՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

Երկու աղբյուրների սարը, Թեժ սարի հետ ով գիտի գիշերն ինչ զրույց էին ունեցել, ինչ էին հիշել: Առավոտը որ բացվեց, նրանք դեմ դիմաց կանգնել ու բարի-բարի իրար էին նայում, առավոտվա նման ուժավորված ու վստահ, որ իրենք մաքուր–մաքուր են, իրենց գլխին կախված երկնքին արժանի: Այս առավոտ գեղեցկությունն էր, որ իջել էր նրանց լանջերին վառ դեղին ու կարմիր թաքցրած ծաղիկներով, սար բարձրացող պիոներների աչքերի մեջ արևի հետ խուտուտ տալով, ծաղիկներին ու խոտերին, սարի գլուխը բարձրացող ու տակն անցնող կածանին, գլխավերևով վայրկենական անցնող թռչունին հայացք գցելով, հեռվից անհայտ աղբյուրակի գլգլոցին, իր բզզոցը արար աշխարհի բզզոցին խառնած բզեզին, իրար կողքի բացված ;ուսաբացի կաթիլ կակաչների շշուկներին:

Ամպը ամպին, ամպր սարին, սարը սարին, սարը մարդուն, մարդը սարին հենված գնում–գնում, երկարում ու ընդարձակվում, դառնում են աշխարհ, որ մի տեղ ծերունու հայացքի պես կնճռոտում ու արդեն ծալծլվում է ժամանակից խանձված, մի տեղ էլ անհոգ ծիծաղ ու խինդ է դառնում:

Էլ ի՞նչ, Հանքավանի սարեր, այսօր ձեր ուսերին ելնող պիոներների շարքն ասաց, որ դուք արդեն մեծացե՛լ եք:

Այդպես է, մանուկները իրենց հայրերի ու պապերի ուսերին նստած գնում են, լեռներ, ձեր ուսերին նստած գնում են, մինչև որ իրենք էլ հայր ու պապ դառնան:

Ձեր փեշերին ճամբարներ՝ մանուկներով լի. «Համիկ», «Արաքս», «Լուսաբաց», «Նաիրիտ»...

Կողքի գյուղի կոլտնտեսության դիրեկտորի «Վիլիսը» հասնում է կածանով դեպի աղբյուրը բարձրացող պիոներներին: «Արաքս» ճամբարի երկրորդ ջոկատից են, ջոկատավարը՝ ընկեր Անդրեասյանը:

— Այ երեխեք, խոտերի միջից դուրս եկեք,— գոռում է դիրեկտորը՝ իր այդ խուքերից ձանձրացած:— Ախր, որ օրական ամեն ճամբարից մի ջոկատ սար բարձրանա, իմ անասունը ձմռանը ի՞նչ պիտի ուտի: Հազա՛ր ասա...

Կողքին «Համիկ» ճամբարի պետն է՝ ընկեր Մուրադյանը.

— Բա ես իմ պիոներներին կթողնե՞մ այս շոգին այստեղ հասնեն,— ու գլուխը մեքենայի պատուհանից դուրս է հանում: Նայում-զննում է երեխաներին ու ասում.— «Արաքսի» երեխաներն են,— հետո բարձրաձայն նրանց է դիմում.

— Շուտ ետ գնացեք:— Պիոներները չլսելու են տալիս: «Համիկ» ճամբարի պետը կրկնում է,— ետ դարձեք... Եթե ետ դառնաք, երեկոյան ձեզ հրավիրում եմ մեր ճամբար՝ ծիրան անուշ անելու:

Երեխաները ոգևորվում են ու հարցնում.

— Ո՞րն է ձեր ճամբարը:

— «Լուսաբացը»,— խորամանկում է «Համիկ» ճամբարի պետը և ժպտում դիրեկտորին,— «Լուսաբացն» էլ աղքատ չէ...

Ու հասնում են աղբյուրին: Անսովոր մարդը բուռը պահում է հոսանքի տակ, ջուր խմելու համար, և մի ակնթարթ հետո զարմացած ու վախեցած ետ է քաշվում՝ էս ի՞նչ էր, ոսկորներս մրսեցին: Աղբյուրը ճանաչող մարդը կում-կում է ջուրը խմում, մի երկու հատ էլ դեմքին չոփ զարկում ու նայում հեռու: Հովն անիմանալի բուրմունքները խփում է նրա դեմքին, ու մարդն էլ ոչ մի բան չի ուզում աշխարհից: «Համիկի» ու «Լուսաբացի» ջուրը, որ այս սարի աղբյուրից է իջնում ցած, կտրվել է: «Համիկի» պետը կարծում է, որ խողովակի մեջ քար է ընկել: Բայց ջրի մեջ մտնե՞լ կլինի: Տեղ են հասնում «Արաքսի» պիոներները: Ջոկատավար ընկեր Անդրեասյանը տեղեկա-













նում է գործից, հանվում ու ջուրն է մըտնում։ Ձեռքը խողովակի միջով առաջ է տանում ու ջրի սառնությունից շնչակտուր, բայց զուսպ ասում է.

— Ջուրը չի քաշում, բայց քար էլ ոնց որ թե չկա,— դուրս է թռչում ջրից։ Այսպես փորձում է, մի երկու անգամ ևս, դարձյալ ապարդյուն... Ջրից դուրս գալիս մերթ ընդ մերթ բարկանում է պիոներների վրա.

— Զաասացի՞ քիչ խմեք, կհիվանդանաք։

Նրա ջոկատի պիոներները հիանում են իրենց անվախ ջոկատավարով։ Չի համբերում «Համիկի» պետը, շորերը հանում և ինքն է ջուրը մտնում, դիմելով շուրջը կանգնածներին.

— Մի երկար փայտ գտեք, երևի քարը շատ է առաջ գնացել... այ, այդտեղ, ցուցամատով նշում է տեղը,— կամաց-կամաց փորեք։ Խողովակաշարն այդտեղ ծունկ է տալիս, քարն այդտեղից ցած գընացողը չի։ Արաքսցիները սկսում են փորել։

... Երբ հոգնում են, նստում են հաց ուտում, ջուր խմում։ Անհոգ պառկում են մեջքներին ու կոլտնտեսության դիրեկտորի հեռադիտակով նայում ցած՝ ճամբարներին։ Հեռադիտակի ոսպնյակների մեջ անսահման ու տարօրինակ լռություն է, լռության մեջ Թեժ սարի լռությունն է։ Հեռադիտակը փոխանցում է սպիտակ վերնաշապիկով տղային։ Նա է նայում. հեռադիտակի մեջ միայնակ կակաչի լըռությունն է։ Կողքի ընկերն էլ է ուզում հեռուն մոտիկ տեսնել, ու հեռադիտակի մեջ այս աղբյուրը բերող կածանի լռությունն է։

Եվ այս ամբողջ համատարած լռությունը ավելի շատ հանգստության է ընդմանվում՝ երբ աշխատանքի ընթացքում ճակատը բողբոջել է քրտինքի կաթիլներով։

Ջոկատավարը ձեռքով սրբում է ճակատը ու դիմում ջոկատի անդամներից մեկին.

— Սա էլ քեզ «Բարի գործերի օր»։

— Բայց ճամբարում ջոկատի պլաններ-ի մեջ երբ գրում ենք՝ «Բարի գործերի օր», նման չի լինում այսօրվան, մի տեսակ ոնց որ թե սուտի-մուտի բան լինի,— ասում է մազերը խուզած տղան։ Բոլորը շարունակում են լռել։ Երեկոյան «Համիկում» էլ ջուր կլինի, «Լուսաբացում» էլ։

ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ

## Հաղթանակի տոնը

Երբ ես չեմ եղել, իմ հայրը՝ նույնպես,
Աշխարհում կռիվ է եղել մեծ,
Կռվել է իմ պապր քաջի պես,
Կռվել ու հաղթել է թշնամուն:

Հաղթել ու տուն է դարձել իմ պապը՝
Կրծքին մեդալներ ու դեմքին սպի,
Խաղաղ բերկրանքով հերկել է հողը,
Մինչ խոր ծերություն աշխատել էի:

Ու հիմա չկա իմ պապը բարի,
Մենք օրն ենք տոնում մեծ Հաղթանակի,
Պատից կախված է նկարը նրա՝
Աչքերում հավատ ու դեմքին սպի:

## Դեղձենին

Կրկին եկել է գարուն,
Ծաղկել է իմ դեղձենին,
Մարդիկ անցնում են, նայում,
Նա ժպտում է ամենքին:

Մարդի՛կ, դուք էլ ժպտացեք,
Բարի, բարի ժպիտով,
Իմ դեղձենին է ծաղկել
Գարնան անուշ բուրմունքով:

ՇՈՒՇԱՆԻԿ ԿՈՒՐՂԻՆՅԱՆ
Երևանի № 168 դպրոց,
7-րդ դասարան



«ՄԵՐ ԲԱԿԸ», ԱՌԱՔԵԼՅԱՆ ՄԱՐԻՆԵ, 11 տ., Երևան




# Շնորհաշատ Արմինեն

Արմինե Սիմոնյանը ծնվել է 1974 թ. մարտի 8-ին: Սովորում է Ազիզբեկովի № 2 միջնակարգ դպրոցի վեցերորդ դասարանում: Նվագում է դուդուկ, շվի, կլարնետ, դհոլ, զուռնա, ինչպես նաև ջութակ և ակորդեոն: Անցյալ տարի նա արժանացավ «Հայհամերգ» միավորման պատվոգրին, իսկ դպրոցականների երգիպարի փառատոնում, որը նվիրված էր մեծ Հաղթանակի 40-ամյակին, գրավեց առաջին տեղը:

Լենինականում կայացած Անդրկովկասյան դուդակահարների մրցույթում Արմինեն արժանացավ հուշադիպլոմի: Վայոցձորցի դըլպրոցականը գերել էր բոլորին:

Աղջկա երաժշտական ունակությունները առաջին անգամ նկատեցին հայրը և եղբայրը: Հինգ տարեկան էր, երբ ձեռքը դհոլ առավ, իսկ մի օր էլ, երբ եղբայրը դուդուկ էր նվագում, հարցըրեց, թե ինքն էլ է ուզում նվագել, ինչպե՞ս նվագի: Գնեցին շվի, և շուտով Արմինեն սկսեց նվագել նաև շվի: Այսպես՝ ծնողների ու եղբոր օգնությամբ, աղջիկը ազատորեն սկսեց նվագել դուդուկ, կլարնետ, զուռնա և շվի:

Այժմ նա սովորում է Ազիզբեկովի արվեստի դպրոցի ջութակի բաժնի 4-րդ դասարանում: Հասցնում է պատրաստել և՛ երաժշտական առաջադրանքները, և՛ մյուս դասերը: Պարտաճանաչ է, օգնում է դասընկերներին, նվագում Ազիզբեկովի շրջանային մշակույթի տան ժողգործիքների խըմբում:

Նա երազում է կոմպոզիտոր դառնալ:

ԽԱՉԱՏՈՒՐ ՄԱՐԳԱՐՅԱՆ




Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

Շախմատի աշխարհի նոր չեմպիոնի հետ խոսելու համար կենտրոնական թերթերից մեկը ընթերցողին էր տրամադրել հեռախոսային երեք համար. ցանկացած մարդ ամսի 16-ին կարող էր համարներից մեկով զանգել ու խոսել, հարցեր տալ աշխարհի չեմպիոնին: Միության և աշխարհի ամեն քաղաքացի այդ երեք ժամվա ընթացքում հնարավորություն ուներ հեռախոսային կապի մեջ մտնել նրա հետ:

Երիտասարդ չեմպիոնը, ինչպես կայծակխաղում, արագորեն բարձրացնում էր զանգող հեռախոսների լծակները կամ վերցնում օգնականների ձեռքից, կարճ ու սպառիչ պատասխանում հարցերին, կարողանալով տեղին ու անանց վիրավորելու ընդհատել զրույցը, երբ խոսակցությունը վերածվում էր շատախոսության, կամ խոսողն այլևս ասելիք չէր ունենում, կամ էլ ասելիքը կարևոր չէր լինում: Մի քանի մարդ օգնում էին նրան, լծակները վերցնում, դնում կամ մատուցում: Բոլոր խոսակցությունները ձայնագրվում էին: Չեմպիոնն ազատորեն խոսում էր մի քանի լեզուներով՝ անգլերեն, գերմաներեն, ֆրանսերեն, ինչպես նաև՝ սլավոնական լեզուներով, որոնց ասելիքը զարմանալիորեն ճիշտ կռահում էր՝ երբեք այդ լեզուները հատուկ սովորած չլինելով:

Հասկանալի է, որ հարցերը բազմապիսի, իմաստավոր և անիմաստ էին, բայց նա կարողանում էր բոլորին պատասխանել սուր, հետաքրքիր, խորիմաստ, նուրբ հումորով: Խոսողը միայն նա էր, մյուսները լուռ աշխատում էին: Արդեն ձայնագրվել էր մի քանի կասետ, երևի բոլորն էին հոգնել, բայց չեմպիոնը շարունակում էր նույն ավյունով՝ իր եռանդով, ոգով զարմացնելով նորից, ինչպես զարմացրել էր քսանչորս մրցախաղից կազմըված ծանր մրցման ժամանակ:

Երրորդ ամսվա վերջերին նորից մի զանգ եղավ Երևանից: Խոսողը շնորհավորեց, ապա ասաց.

— Դուք կարող էիք հաղթել հինգերորդ մրցախաղում, եթե ձին տեղաշարժեիք աջ:

— Ճիշտ է,— արագ համաձայնեց չեմպիոնը:— Ավաղ, դա ես հետո հասկացա, տնային վերլուծության ժամանակ:

— Բայց դուք հաղթելու փոխարեն կպարտվեիք, եթե ձեր հակառակորդը յոթերորդ մըրցախաղում բ գծի զինվորը զոհաբերեր տասնըվեցերորդ քայլում:

— Դա էլ գիտեմ, շնորհակալ եմ: Բայց այդ մեկը, կարծում էի միայն ես գիտեմ:

— Ութերորդը, որ վերջացավ ոչ-ոքի, երեսուներորդ քայլում, այսինքն՝ երկու քայլ հետո, ձեզ հաղթանակ պիտի բերեր:

— Շատ կասկածելի է: Բայց ո՞վ եք դուք:

— Ի՞նչ նշանակություն ունի: Այդ մրցամարտում ձեր նավակը հիանալի դիրքում էր, դուք դա չնկատեցիք, ներեցեք, որ այսպես եմ խոսում: Ձեզ թվում էր՝ նավակը խանգարում է, բայց ձեզ խանգարողը ձեզ հաղթանակ էր բերելու, եթե մի քայլ ետ նահանջեիք:

Չեմպիոնի աչքի առաջ եկավ այդ մրցամարտի պատկերը. շախմատային տախտակի վրա պարզ տեսավ նավակը, վերջինիս ետ նահանջելու քայլը և զարմացավ. աջ թևում փիղը երկար նետումի հնարավորություն էր ստանում, իսկ հաջորդ քայլին ձին նրան հաղթանակ էր բերում:

Օգնականներից մեկը մատուցում էր նրան մյուս հեռախոսի լծակը, չեմպիոնը չէր տեսնում նրան, լուռ իր մտապատկերների հետ էր: Ո՞վ է այս հանելուկային մարդը հեռագծի հակառակ ծայրում, Երևանում, ուր նա դեռևս չէր եղել ոչ մի անգամ:

— Դուք շախմատի՞ստ եք,— ասաց նա:— Ձեր ազգանո՞ւնը: Գուցե ճանաչեմ:

— Ոչ, ես շախմատ չեմ խաղում, ես շախմատ խաղալ չգիտեմ:

— Այդ դեպքում, ո՞ւմ խոսքերն եք, ավելի ճիշտ, ո՞ւմ կատարած քայլերն եք կրկնում դուք:

— Ես չեմ ցանկանում ձեր ժամանակը վատնել, գիտեմ, որ շատերն են սպասում: Միայն ասեմ այսքանը. ես շախմատ վատ եմ խաղում, դրա համար էլ չեմ խաղում, սակայն ինձ անհնարին է հաղթել: Իսկ ինչ ա-

ացի ձեզ՝ բոլորն իմ մտորումների արդյունքն է: Եթե ձեզ կհետաքրքրի, ասեմ նաև, որ քսաներկուսում մրցախաղը կարող էր ավարտվել քսանութերորդ քայլում՝ ձեր փայլուն հաղթանակով: Առհասարակ, ես նկատեցի, որ դուք կարողանում եք անշեղորեն ընթանալ դեպի հաղթանակ, նույնիսկ զարմանալի է, շախմատ չիմանալով, ինչպես եք կարողանում դուք այդ բանն անել: Բայց խաղի ընթացքում երբեմն դուք կորցնում եք հաղթելու ճանապարհը և շեղվում: Այդպես եղավ նաև նախավերջինում: Իսկ ընդհանրապես ես ապշած եմ ձեր ընդունակությունների վրա:

Զնայած անծանոթը չեմպիոնին ասաց, որ նա՝ չեմպիոնը, շախմատ չգիտի, չեմպիոնին ավելի շատ հետաքրքրեց նախավերջին մրցախաղում իր կորցրած հնարավորությունը: Եթե անծանոթն այժմ ճիշտ մեկներ իր քայլը, ուրեմն դա մի արտակարգ ուժի շախմատիստ է, որովհետև թեև ինքը կռահում էր, բայց մինչև հիմա չի կարողանում որոշակի տեսնել, թե իր կատարած սխալը որ քայլում եղավ:

— Տասնիննին,— ասաց անծանոթը,— ձին չպիտի տեղաշարժեիք: Մինչդեռ աջ թևում թագուհին ճչում էր՝ ե՜ս, ե՜ս... Դուք չլսեցիք նրա ձայնը:

Օգնականներն այլ լծակներ ձեռքներին նրան էին սպասում, թե երբ չեմպիոնը կընդհատի այդ չափից ավելի ձգձգված խոսակցությունը:

— Դրեք,— ասաց չեմպիոնը:— Առայժմ ես ոչ մեկի հետ չեմ խոսում, ես այս մարդու հետ պիտի զրուցեմ: Լսեք,— ասաց նա լսափողում,— դուք ո՞վ եք մասնագիտությամբ:



— Մաթեմատիկոս չեմ, ֆիզիկոս չեմ, ինտելեկտուալ չեմ, չնայած դա ինչ կարևոր է: Եվ խնդրում եմ, չնեղվեք իմ խոսքերից, դուք այժմ աշխարհի թիվ առաջին շախմատիստն եք: Եվ ինչ լավ է, որ շախմատ չգիտեք:

— Ես ձեր ասածներից ոչինչ չեմ հասկանում: Իսկ դուք, ներեցեք, շախմատ գիտե՞ք:

— Ցավոք, գիտեմ:

— Ես ղաղարում եմ որևէ բան հասկանալ: Շախմատ գիտեք, իսկ խաղալ չգիտեք: Խաղալ չգիտեք, բայց ձեզ հաղթելն անհնարին է:

— Այո: Մի քիչ էլ խորհեք, ձեր կարողությունների տեր մարդը կհասկանա, թե ինչ եմ ասում ես: Ի դեպ, դուք զարմանալի հասուն մտքի տեր մարդ եք, չնայած ձեր մատաղ տարիքին: Մեր ժամանակներում շատ քչերը կարող են չափվել ձեզ հետ:

— Իսկ դո՞ւք:

— Ե՞ս,— անծանոթը գծի ծայրում երևի ժպտաց, հավանաբար հարբուխ ուներ, թաշկինակով չորացրեց քթի ծայրը:— Ես նույնիսկ բարձրագույնը լրիվ չավարտեցի: Մեկ տասնյակ գրքից ավելին չեմ կարդացել:

— Խոսենք շախմատից: Էլ ի՞նչ ունեք ինձ ասելու:

— Ի՞նչ է հետաքրքրում:

— Պարզեք ձեր խոսքերի իմաստը: Ասում եք՝ շախմատ խաղալ չգիտեք, բայց դուք հուշեցիք մի քանի բաներ, որ, իմ կարծիքով, ինձնից բացի աշխարհում ոչ ոք չպիտի իմանար: Նույնիսկ, նույնիսկ ավելին, ես ձեզնից լսեցի որոշ դիտողություններ, մտովի տեսա ձեր մատնացույց արածը և, անկեղծ ասած, անչափ զարմացած եմ:

— Լավ, անջատեք ձայնագրիչը: Ձայնագրվո՞ւմ է:

— Այո: Անջատեմ:

— Ես գաղտնիք չեմ հաղորդելու ձեզ, կամ ասածս մի մեծ բան չէ: Սակայն ես ափսոսում եմ, որ կարող է մեկ ուրիշին էլ երևալ այն, ինչ երևացել է ինձ, ու շախմատը, որպես մարդու մտավոր աշխատանքի, խաղի, ունակությունների դրսևորման սքանչելի մի ձև՝ ոչնչանա, կորչի անհետ:

— Այդ ինչպե՞ս:

— Շատ հասարակ: Կա մի ձի...

— Ի՞նչ ձի.

— Սովորական ձի, որ արածում է շախմատի դաշտում,—անծանոթը ծիծաղեց:—Քանի՞ սուր կետ ունի ձին:

— Վեց,— իսկույն պատասխանեց չեմպիոնը:

— Իրո՞ք անջատած է:

— Ես ձեր միակ լսողն եմ:

— Վեց: Ահա այդպիսի մի պատկերով են լուծվում շախմատային բոլոր դժվարին խնդիրները: Բավական է այդ պատկերը ճիշտ տեղադրել տախտակի վրա, ապա թամբի տեղը բռնող ֆիգուրը կլինի հենց այն միակը, որը պետք է տեղաշարժել ու տեղաշարժել այնպես, որ կարծես ձին գնում է առաջ: Հասկանո՞ւմ եք:

— Կռահում եմ: Կարո՞ղ ենք այժմ հեռախոսով մի կայծակ-խաղ խաղալ:

— Շարեք,— ասաց անծանոթը:

Մեկ րոպեից էլ կարճ ժամանակ անց նրանք արդեն խաղում էին՝ քայլերը միմյանց թելադրելով: Վեցերորդ րոպեին չեմպիոնն ընդունեց իր պարտությունը: Երկրորդ մրցամարտը նույնպես ավարտվեց նրա պարտությամբ:

— Լսեք,— ասաց նա,— դուք ինձ ձե՞ռ եք առնում: Ո՞վ եք դուք: Գուցե սատանա՞ն:

— Խնդրեմ, անեսացիա մի սարքեք, էղածը մի դատարկ բան է. կա մի ձի, որ արածում է շախմատի դաշտում: Սակայն ես ձեզ երբեք չեմ բացահայտի շախմատի գաղտնիքը, ոչ մեկին չեմ բացահայտի, այլապես երբ դա իմանա ամեն ոք, շախմատը, որպես շախմատ կվերանա:

— Դուք կարող եք ինձ հետ խաղալ և ամենայն հավանականությամբ ինքներդ դառնալ աշխարհի չեմպիոն, ես լիարժեք չեմպիոն չեմ զգում այլևս ինձ, ինչո՞ւ չեք խաղում:

— Ես ձեզ ասացի, որ խաղալ չգիտեմ: Ես միայն գիտեմ շախմատի ներքին մեխանիզմը:

— Դուք...

— Այո, որոշ ժամանակ, բայց այժմ բուժվել եմ, մի կասկածեք, ես առողջ մարդ եմ, խելագար չեմ:

— Ես կհանդիպեմ ձեզ:

— Ինչ իմաստ ունի: Դուք կհամոզվեք ինձ, որ ես ձեզ հետ շախմատ խաղամ, մինչդեռ նորից եմ կրկնում, ես շախմատ խաղալ չգիտեմ: Դա շատ բարդ, դժվարին խաղ է, պահանջում է հսկայական հոգևոր և մտավոր կարողություններ, որ ես չունեմ: Ես ամեն ինչ ճիշտ եմ ասում, ոչինչ չեմ չափազանցնում: Ես, այո, կարող եմ ձեզ հետ շախմատ...խաղալ, այն բառը չէ, բայց ոչինչ, թող այդ բառով արտահայտվեմ, խաղալ ու տանել բոլոր մրցախաղերը, սակայն ես երբեք շախմատիստ չեմ լինի: Շախմատի աշխարհի չեմպիոն, որ խաղալ չգիտի:

— Բայց մենք խաղացինք և...

— Ուրեմն, ձի, վեց սուր կետ, ամեն կետում... այդ կետերն են, դուք գիտեք՝ գլուխը, չորս ոտքը և պոչը: Ուրեմն, ամեն սուր կետում, եթե մտովի ճիշտ տեղադրեք այդ պատ-

կերը տախտակի վրա, այդ կետերը ցույց կըտան... մի խոսքով, գլխի հետ համընկնող կամ այդ կետում գտնվող հակառակորդի ֆիգուրը կլինի հենց այն ֆիգուրը, որի վրա պիտի հարձակվել:

— Թամբի ֆիգուրով:

— Այո:

— Իսկ պո՞չը,— ծիծաղեց չեմպիոնը,— որին ամենից ավելի վտանգ է սպառնում, այո՞:

— Այդ պատկերը երևի մի օր կտեսնի մի որևէ երեխա տախտակի վրա և առանց հասկանալու, թե ինչ է անում՝ կոչնչացնի շախմատ կոչված հրաշալի, հրաշալի խաղը:

— Դուք չե՞ք տա ձեր հեռախոսի համարը:

— Ես չգիտեմ՝ ինչի համար է, ոչ:

Հեռախոսն անջատվեց: Լսափողի մեջ հընչում էին ընդհատվող ձայներ:

Մյուս հեռախոսները վաղուց այլևս չէին զանգում, պայմանավորված երեք ժամն անցել էր:

Չեմպիոնը չէր խոսում, և մյուսները հարցերով չէին խանգարում նրա լռությունը: Իսկ նա մտածում էր, որ թիվ առաջին շախմատիստը, այսինքն՝ ինքը, երբեք չթաքցրեց, թե ինչ մեծ ուրախություն է մարդուս համար այդ կոչումը նվաճելը, ինչ է դա տալիս իրեն և ինչ երջանկություն է այդքան նշանավոր լինելը, կոչվել անգամ հանճար, ամեն, ամեն ինչ... Բայց ահա, կա մեկը, որ հրաժարվում է այդ ամենից, դրան հասնելու ճանապարհը նա ունի, բայց չի օգտվում, որովհետև չի ցանկանում, որովհետև անկարող է հեշտությամբ, համարյա առանց ճիգի գրավել վիթխարի մի հաջողություն: Որովհետև մի հասարակ բան խանգարում է դրան՝ կարգին մարդու ազնվությունը: Իսկ մի՞թե երկրագնդի վրա կգտնվի մեկ ուրիշը, որ կարողանա անել վիթխարի մի քայլ ու չանի:

— Որևէ բան ձայնագրվե՞ց այս վերջին խոսակցի հետ,— հարցրեց նա:

— Լրիվ,— ասացին օգնականները:

— Բայց ես խնդրել էի անջատել:

— Մենք երկու ձայնագրիչով էինք աշխատում, ապահովության համար: Մեկը միշտ կարող էր շարքից դուրս գալ:

— Այդ ձայնագրությունը հանեք և տվեք ինձ:

Նրա խնդրանքն արագ կատարեցին: Նա վերցրեց ժապավենը, խնդրեց նաև մի մըկրատ և բոլորի աչքի առջև սկսեց մանր կըտրատել ժապավենը:

— Խաղն ազնվության վրա էր: Եթե ես առաջինը չեմ, գոնե երկրորդն եմ: Իսկ ազնվության մեջ թող երկուսս էլ հավասար լինենք:

ՀՐԱՆՏ ԱԼԵՔՍԱՆՅԱՆ

# Հարցում

— Ծղրիդ, խոտերն ի՞նչ են երազում
առավոտների ծնընդից առաջ,
երբ գարնան գիշերն անձայն ու սահուն
անցնում է արագ, դաշտերով կանաչ:

— Լույս են երազում, արև ինքնաբուխ,
հորիզոնների մաքրություն համակ,
որ կարողանան կանաչել հստակ՝
դաշտերի արդար կանչերին հլու...

— Ծղրիդ, խոտերն ի՞նչ են երազում
բարկ կեսօրներին երկար ամառվա,
երբ դաշտերով է ասես գլորվում
արևի շքեղ գույնը ոսկեվառ:

— Պաղ անձրևներ ու քամի զովաբեր,
ուրթ գիշերներ են խոտերն երազում.
որ շոգից նեղված դաշտերը արձակ
շող ու շաղերով վերստին օծվեն...

— Ծղրիդ, խոտերն ի՞նչ են երազում
պաղ մշուշներում անձրևոտ աշնան,
երբ դեղինով են դաշտերը ներկվում
և ձայնն է լսվում մոտեցող ձմռան:

— Նորից արև ու լույս են երազում,
օրերի խինդ ու բարություն խաղաղ,
որ դաշտերը միշտ կանաչով շողան,
և չընդհատվի իմ երգը կենսուրախ...

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ





# ԶՐՈՒՅՑՆԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ



**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

## Արամը

Հայկ-Հայկի սերնդից Արամը շատ գործեր է արել Մեծ Հայքի հայկական անջատ իշխանությունները միավորելու համար: Արամի մասին պատմում են և՛ Խորենացին, և՛ ասուրաբաբելական սեպագիր արձանագրությունները: Այս վերջիններում նրա անունը **Արամու** ձևով է գրված: Այդ ու-ն վերջավորություն է, և հայոց այդ թագավորի անունը ավելի ճիշտ է գրված Խորենացու գրքում՝ **Արամ:**

Արամի ապրած ժամանակաշրջանը հայտնի է: Նրա անունն առաջին անգամ հիշվում է Ասորեստանի Սալմանասար III թագավորի արձանագրություններում: Այս թագավորը իշխել է մ. թ. ա. 859—824 թվականներին: Ուրեմն, Արամը մ. թ. ա. 9-րդ դարի գործիչ էր, նա իշխանության է հասել մ. թ. ա. մոտ 875 թ. իսկ մ. թ. ա. 858 թ. նա արդեն հզոր տիրակալ էր՝ մեծ զորքով ու հարստությամբ:

Խորենացին նրան անվանում է հայկյան Արամ, իսկ Սալմանասար III-ը ասուրաբաբելերեն՝ **ուրարտայա Արամու:** Մենք գիտենք, որ ասուրաբաբելացիները հայերին **ուրարտայա** են ասել: Ուստի՝ Սալմանասարի գրածը եթե հայերեն թարգմանենք, կլինի **հայ Արամ** կամ հայկական Արամ:

Խորենացին Արամի մասին գրում է ըստ Մար Աբասի այսպես. «Սա աշխատասեր և հայրենասեր մարդ լինելով՝ լավ էր համարում հայրենիքի համար մեռնել, քան տեսնել, թե ինչպես օտարացեղ ազգեր ոտնակոխ են անում իր հայրենիքի սահմանները, և օտարները տիրում են իր արյունակից հարազատների վրա»:

Խորենացին պատմում է, թե ինչպես է Արամը երկիրը հարավ-արևելքում պաշտպանել մարերից, հարավում՝ ասորեստանցիներից: Նա հաղթելով Արարատի թագավորության վրա հարձակված Ասորեստանի բանակին՝ արշավել է առաջ ու հասել Միջագետք: Ապա Արամն արշավել է նաև դեպի արևմուտք, այնտեղից եկող վտանգը վերացնելու: Նա հաղթարշավ հասել է մինչև Փոքր Հայքի վերջը: Նրա հասած երկիրը հետո հունարեն կոչվեց Պրոտին Արմենիա՝ Առաջին Հայք: Հույները Փոքր Հայքի այս մասն այդպես են անվանել այն պատճառով, որ դա եղել է իրենց ամենից մոտ գտնվող հայկական վայրը:

Արամի ժամանակ այդտեղի հայերի մի մասը օտարախոս էր դարձել: Դա նշանակում է, որ այդ մարդիկ կարող էին իրենց արդեն հայ էլ չհամարել. չէ՞ որ հայությունը պահող միակ և հիմնական նշանը հայոց լեզուն է: Խորենացին գրում է, որ Արամը «այդ աշխարհի բնակիչներին հրաման է տալիս, սովորել և խոսել հայերեն»:

Խորենացու օգտագործած աղբյուրները Արամի մասին նաև որոշ աննիշտ տեղեկություններ են տվել: Ոչ միայն նրա ապրած ժամանակն է շփոթված, այլև ուրիշ բաներ: Օրինակ, գրված է, թե Արա Գեղեցիկը Արամի որդին է եղել, այնինչ, ինչպես կտեսնենք, նա եղել է Արամի ծոռան՝ Մենուայի որդին:

Ասորեստանի Սալմանասար III թագավորի սեպագիր արձանագրություններում պատմըվում է Ասորեստանի և Արարատի թագավո-

րության աՇեղ պատերազմների մասին: Այն ժամանակներում թագավորները իրենց արձանագրությունների մեջ գոռոզաբար գրում էին իրենց հաղթանակների մասին մեծ չափազանցություններով, նրանք պատմում էին, թե ինչպես են հակառակորդի մարդկանց կոտորել, երկիրը ավերել, այրել, սար ու ձոր արյունով լվացել և այլն: Իրենց պարտությունների մասին նրանք չէին գրում:

Իր թագավորության հենց առաջին տարում Սալմանասարը հարավից հարձակվեց Հայքի վրա: Նրան նախ դիմադրեց Նաիրիի հայոց անջատ թագավորներից մեկը՝ Գակիան (երևի ճիշտ անունը Գագիկ է եղել): Սա իր փոքրաթիվ զորքով բարձրանում է լեռները: Նրան հետապնդում է Սալմանասարի մեծաքանակ զորքը: Ի վերջո այդտեղի հայերը և նրանց ղեկավարը ստիպված հնազանդություն են հայտնում Ասորեստանին:

Հետո Սալմանասարը շարունակում է իր արշավը դեպի հյուսիս և հասնում է Արամի ամրոց-քաղաքներից մեկին, որ ասուրաբաբելական սեպագրերում կոչվում է **Սուգունիա**, իսկ հայերեն կոչվել է Սուկան կամ Սյունիկունիս: Այս քաղաքն ասորեստանցիները շրջապատում են, համառ կռիվներից հետո՝ գրավում: Սալմանասարը կոտորած է սարքում և այրում է շրջակա 14 հայկական բնակավայրերը: Բայց Արամի ղեկավարությամբ հայերը շարունակում են համառ դիմադրություն ցույց տալ: Սալմանասարի զորքը հասնում է մինչև Վանա լճի հարավային ափը:

Իր թագավորության 3-րդ տարում Սալմանասար III-ը նորից է արշավում դեպի Վանա լճի հարավ-արևմտյան կողմը: Նա անցնում է հայոց Արածանի գետը, գնում է հյուսիս, հաղթում է հայոց անջատ իշխանություններին: «Մինչև հիմքերը քանդեցի, ավերեցի, կրակով այրեցի, շատ գերիներ առա, նրանց ունեցվածքը և հարստությունը խլեցի»,— այսպես է գրում Ասորեստանի թագավորն իր այդ արշավանքի մասին: Ապա նա գալիս և պաշարում է Արամի գլխավոր քաղաքը, որ սեպագրերում կոչվում է Արծաշկու:



Հայոց քուրմ-թագավորը (երևի Արամը) ցուլի վրա (բարձրաքանդակ Արծկեից): Սուսերանման տերևները ներկայացնում են սոսի ծառ, որը Հայկի խորհրդանիշն էր:



Ձիու գլխի քանդակ Արարատի թագավորության ժամանակաշրջանից

Դա հայոց Արծկե քաղաքն է, որը գտնվում էր Վանա լճի հյուսիս-արևմտյան ափին:

Սալմանասար թագավորը գրում է. «Ես մոտեցա Արծկեին՝ հայոց Արամի թագավորական քաղաքին»: Արամը դիմադրում էր, բայց տեսնելով հակառակորդի մեծաքանակ զորքը, որոշում է ասորեստանցիների դեմ ճակատամարտ տալ լեռներում իմանալով, որ հայոց զորքը ավելի վարժ է կռվում լեռնային վայրերում: Արամը բարձրանում է Սիփանի լեռները: Ասորեստանի զորքը մտնում է Արծկե: Սալմանասար III-ը գրում է. «Իմ արիության ուժով, որպես վայրի ցուլ, ես ոտնակոխ արեցի նրա երկիրը, քաղաքներն անապատ դարձրի, Արծկեն՝ հարևան շեների հետ ես քանդեցի, ավերեցի, կրակով այրեցի, մարդկանց գլուխներից աշտարակներ շինեցի...»:

Իհարկե, Ասորեստանի թագավորը, ըստ սովորության, շատ է չափազանցնում իր արածները, բայց միևնույն է, մենք զգում ենք, թե ինչ դաժան ժամանակներ են եղել և որքան անգութ են ասորեստանցիները վարվել Արարատի երկրի հայ բնակչության հետ:

Սալմանասարի զորքը հետապնդելով Արամին՝ բարձրանում է լեռները: Ճակատամարտ է տեղի ունենում: Հայ նիզակավորներն ու նետ-աղեղնավորները դիմադրում են խիզախորեն: Բայց ասորեստանցիները գրավում են Արամի լեռնային ճամբարը, շատերին են սպանում, գերի վերցնում, խլում են Արամի մարտակառքերը, ձիերը, ջորիները, թագավորական մեծ հարստությունը: Իսկ Արամը իր զորքի մի մասով բարձր լեռներում շարունակում է դիմադրել հակառակորդին: Ասորեստանցիները չկարողանալով հաղթել Արամին, իջնում են լեռներից, անցնում Վանա լճի արևելյան մասն ու այստեղ շարունակում ասպատակել հայկական գյուղերն ու քաղաքները: Ապա Ասորեստանի թագավորը իր զորքով գալիս է Վանա լճի ափը. «Շարունակելով իմ արշավը,— գրում է նա,—ես իջա դեպի Նաիրի երկրի ծովը: Ծովում ես լվացի Աշուրի հզոր զենքը, նրան զոհեր մատուցեցի, իմ պատկերը կանգնեցրի, վրան գրեցի փառաբանություն Աշուրին...»: (Հիշենք, որ Աշուրը Ասորեստանի գլխավոր աստվածն էր): Ապա Սալմանասարը մեծ ավարով վերադառնում է իր Աշուր մայրաքաղաքը: Իր արշավի մասին թագավորը արձանագրություններ է փորագրել տալիս և քաղաքներից մեկի դարպասի բրոնզե սալերի վրա նկարել է տալիս իր արշավանքները դեպի Արարատի երկիրը: Այդտեղ մենք տեսնում ենք հայոց և Ասորեստանի զորքերի մարտերը, մեր Սուկան և Արծկե քաղաքների գրավման պատկերները, հայոց դիմադրող զորքերի նահանջը դեպի լեռներ, ասորեստանցիների կատարած կողոպուտի պատկերներ:

Այդպես, Ասորեստանի մեծաքանակ զորքը շատ ավերներ ու դաժանություններ արեց Հայքում, բայց չկարողացավ Արամին վերջնականապես հաղթել, ասպարեզից վերացնել: Արամն իր զորքի մնացած մասով լեռներից իջավ, նորոգեց քաղաքները, գյուղերը, ամրոցները, նոր ամրոցներ կառուցեց, նոր զորաբանակներ կազմեց: Իսկ հետո Արամն իր զորքերով հասավ մինչև Միջագետքի հովիտը՝ սարսափ ազդելով հակառակորդի վրա:

Հիշենք, թե ինչպես էին Ասորեստանի զորքերը մտնում Նաիրի, կողոպտելով կտրում անցնում հարավից մինչև Սև ծով, իսկ անջատ հայ թագավորությունները չէին կարողանում դիմադրել: Այդ ժամանակն անցավ: Արդեն ստեղծվել էր միասնական հայոց պետություն:

Վերջին անգամ Սալմանասար III-ը Արամի դեմ պատերազմ սկսեց 844 թ.: Նա, անցնելով հայոց Տուրուբերան կիրճը, հանկարծակի հարձակվեց Արարատի թագավորության շեների վրա, ավերածություններ անելով, բայց խուսափեց Արամի զորքերի հետ ընդհարվելուց: Արարատն արդեն հուժկու պետություն էր դարձել:

Արամը շատ հզորացրեց Հայկ-Հալդի հիմնած Արարատյան պետությունը, դարձրեց այն մի այնպիսի թագավորություն, որն արդեն կարող էր միավորել Մեծ Հայքի անջատ բոլոր հայոց թագավորություններն ու իշխանությունները և դառնալ Հարավ-արևմտյան Ասիայի ամենահզոր պետությունը:

Հայերը շուտով մայրաքաղաք ընտրեցին Վանա լճի արևելյան ափին՝ Վան-Տոսպում, այն, ինչպես գիտենք, ասուրաքաբելերեն արձանագրություններում կոչվում է Տուրուշպա, նորխուռիերենում՝ Տուշպա, հայերեն՝ Տոսպ: Սա ճիշտ որոշում էր, քանի որ փորձը ցույց տվեց, որ Նաիրիի (Վանա) լճի հյուսիս-արևմտյան, հյուսիսային մասերում և Արծկե մայրաքաղաքում ասորեստանցիներին դիմադրելը շատ դժվար էր կամ անհնար: Վան-Տոսպի շրջանն ավելի հարմար էր այդ տեսակետից: Եվ հայերը դրանից հետո իրենց պետությունը սկսեցին անվանել **Վան**, այն ժամանակվա հայերենով՝ Բիան, իսկ նորխուռիերեն արձանագրություններում, ինչպես գիտենք, այն գրվում էր Բիաինա:

Արամը՝ ևս աստվածացվեց: Հայկական հին տոմարի ամեն ամսվա երրորդ օրը կոչվում էր Արամ:

(շարունակելի)

ՀԱԿՈԲ ԳՈՒՐՈՒՆՅԱՆ

# Սարկավորների հյուրերը



Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

— Այն, ինչ պատմելու եմ, հեքիաթ կարող է թվալ, բայց իրական բան է, իմ աչքով տեսած, մեզ հետ կատարված,— հավատացնում էր հայրս:— Պապս ամեն տարի տավարը, ոչխարը սար էր տանում: Մի ամառ, պատերազմից առաջ էր, ես էլ եղբորս հետ գնացի:

Արագածի լանջերին էր, մեր շատ սիրած վայրերում: Օդր մաքուր էր, ջինջ, ջուրը՝ զուլալ աղբյուր: Մենակ մի վատ բան կար. ամեն քայլափոխի օձի էիր հանդիպում: Երևի օձերն էլ էին ամառանոց գնում: Այն էլ ասեմ, Հայրո պապիս կարծիքն էր, որ եթե օձին ոչինչ չես անում, տեսնելիս քաշվում ես մի կողմ, նա էլ քեզ ոչինչ չի անում: Բայց մենք՝ ջահելներս, կարո՞ղ էինք հանգիստ անցնել:

Հայրո պապս համարյա ամեն օր մեզ հիշեցնում էր.

— Կարապետ,— եղբորս էր նայում,— Սեյրան,— ինձ էր դառնում,— օձերի հետ ախպերություն արեք. կտեսնեք, որ բարի հոգի ունեն:

Եղբայրս լուրջ-լուրջ լսում էր պապիս, իսկ ես կատակի էի տալիս.

— Օձի հետ էլ ախպերությո՞ւն...— ու ծիծաղում էի:

— Մի ծիծաղի, ղոչս, քաղցր խոսքը օձին էլ իր բնից կհանի: Էս առակը հեչ չե՞ս լսել:

— Լսել եմ, Հայրո պապ... Բայց վախենում եմ:

— Մի վախենա, նրան վնաս էլ մի տա:

—Լավ, պապի,— ի վերջո ասում էի ես:

Մյուս օրվա հերթական խրատն էր.

— Օձը լավ կենդանի է: Կասեմ՝ խելոք է, համա պիտի նրա հետ վարվել իմանաս:

Հետո էլ ավելացնում էր.

— Օձն ասում է. «Մի վնասի ինձ, չեմ վնասի քեզ»: Զուր չի, որ ժողովուրդն առակել է՝ օձի պոչը որ չտրորես, քեզ չի կծի: Իհարկե, պոչը որ տրորես, նա էլ պաշտպանվելու է:

Ահա թե մի օր ինչ պատահեց: Ճաշի մոտերքը օձերը եկել (վրանի փեշերը շոգի պատճառով վեր էինք բարձրացրել), շրջապատել էին մեզ ամեն կողմից ու գլուխները ցցած մնացել:

Հայրո պապս կամաց ասաց.

— Մի շարժվեք, հանգիստ նստեք, ես հիմա նրանց կհյուրասիրեմ:

Ինչքան աման ունեինք վրանում, եղած կաթը քիչ-քիչ լցրեց նրանց մեջ ու շարեց օձերի մոտերքը: Էնքան էլ հանգիստ էր Հայրո պապս:

Մտերմական երանգով օձերին ասաց.

— Դե, կերեք, ախպրտիք, ու գնացեք ձեր բանին:

Մենք շունչներս պահած նստած էինք: Օձերը կաթի համից գժված՝ գլուխներն իջեցրին ամանների մեջ, խմեցին ու... քաշվեցին գնացին:

—Պապս քահ-քահ ծիծաղեց: Իսկ ես ուշքի չէի կարողանում գալ: Մինչև հիմա էլ հիշելիս փշաքաղվում եմ,— պատմում է հայրս,— ասածս կարող է հեքիաթ թըվաց, բայց իմ աչքի տեսածն եմ ասում, ասածիս մեջ սուտ բան չկա, ինչպես ասացի, այնպես էլ եղել է, ուզում եք հավատացեք, ուզում եք մի հավատացեք:

# ԺՊԻՏՆԵՐ



● Հեռախոսը զնգում է: Վերցնում է Կարինեն:
— Ո՞ւմ բնակարանն է,— լսվում է լսափողում:
— Մեր բնակարանն է:
— Իսկ ո՞վ է խոսում:
— Ես:




● — Երկուսին գումարած երեք ինչի՞ է հավասար,— հարցնում է ուսուցիչը Արամին:

Արամը լռում է: Ուսուցիչը չի համբերում:
— Դե, Արամ, չէ՞ որ հավասար է հինգի:
— Հինգի՞,— զարմանում է Արամը,— ախր դուք երեկ ասացիք, որ չորսին գումարած մեկն է հավասար հինգի:

● — Ծուկայից ի՞նչ բերեմ քեզ համար,— հարցրեց մայրը փոքրիկ Լուսինեին:
— Ինձ տար, որ ասեմ,— պատասխանեց Լուսինեն:

● — Բոլոր աղջիկներր վատն են,— ասաց փոքրիկ Հայկը:
— Ինչո՞ւ, քո մայրիկն էլ է աղջիկ, նա է՞լ վատն է:
— Նա մեր մանկապարտեզից չէ:

● — Հայրիկս ինձ համար նոր զգեստ է գնել, կարո՞ղ ես գուշակել գույնը,— ասաց փոքրիկ Կարինեն իր ընկերուհուն:
— Առաջին տառը կասե՞ս:
— Մ.
— Մանուշակագույն:
— Ոչ, մածունի գույն:

● — Աշոտ, մայրիկիդ օգնո՞ւմ ես:
— Ոչ, այդպիսի միտք գլխովս անգամ չի անցել:
— Ես էլ չեմ մտածել, թե կարելի է օգնել,— ասաց Արամը,— դա մայրիկիս գաղափարն է:



● — Ինչո՞ւ ես լաց լինում:
— Վախենում եմ՝ լողացնես:
— Բայց ես քեզ չեմ լողացնում:
— Եթե լողացնես, ավելի ուժեղ լաց կլինեմ:

Գրի առավ ԳՈՒՐԳԵՆ ԲԱԼԱՅԱՆԸ

ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ

# ՓՈՔՐԻԿ ԱՌՎԱԿ, ՋՐԻԿՆ ՈՒՐԱԽ

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Առավոտի պաղ աղջամուղջի մեջ առվակը զրնգաց ու սարի կատարից ճամփա ընկավ: Սարի կատարին հին, ոչ մի ամառ չհալվող ձյուն կար ու փոքրիկ, սառցակալած եզրերով աղբյուր: Աղբյուրը ամեն օր նոր ջրերով էր առվակ կազմում, և դեռ ճամփա չգնացած ջրերը չգիտեին, թե մինչև ուր պիտի հասնեն: Ահա՝ այս առվակն էլ թեպետ չգիտեր իր ճամփան, բայց վստահ էր, որ աղբյուրի շրջակայքից հեռու չի գնալու, որովհետև նա դեռ միայն այդքան տեղն էր տեսնում:

— Գնացի՜նք,— զրնգալով կանչեց նա ու շարժվեց:

Աղբյուրից ու ձյունից ցած, մեծ սարի լանջին, դեռ խաղաղ քնած էին ծաղիկները, խոտերի մեջ յուռ նիրհում էր քամին, իսկ ժայռերի վրա, իրենց բներում, դեռ երազներ էին տեսնում արծիվը, բազեն, ճնճղուկները և արտույտները:

Առվակը ճամփան չգիտեր, նրան հին առվակների հունն էր տանում, որ օրեցօր ու տարեցտարի ակոսի պես խորացել էր սարի լանջին:

— Արի՜,— ներքևից շշնջալով կանչեց հունը:

Առվակը առաջինը տեսավ զանգակածաղիկներին: Զանգակածաղիկներից բարձր ուրիշ ծաղիկներ չկային, և առվակը դեռ զրնգալով նրանց կանչեց.

— Եկա՜, զարթնե՛ք, է՜յ քնկոտներ:

Բայց առվակը դեռ չէր տեսել սարալանջի դիմացի հորիզոնը, որտեղ մանրիկ, սպիտակ ամպերը կողքի քաշվելով արեգակի համար տեղ էին բացում: Եվ հիմա արեգակը միանգամից նրա դեմքին նայեց, ու առվակը արծաթյա շերտի պես փայլեց կարմրավուն դարձած սարալանջի ու դեռ ստվերոտ ծաղիկների մեջ:

— Դու ո՞վ ես,— շփոթված, բայց ուրախ հարցրեց առվակը:

— Ես արեգակն եմ,— ժպտաց արեգակը:

— Դու ի՞նչ ես անում,— ասաց առվակը:

— Ես պիտի լուսավորեմ քո ճանապարհը,— ասաց արեգակը և լրիվ դուրս եկավ:

Մինչև առվակը հարցնելու նոր բան կմտածեր, տեսավ, որ իր ափերին արդեն շարվում են թռչունները:

— Դուք ովքե՞ր եք,— զարմացած հարցրեց նա:

— Մենք արծիվներն ենք,— ասացին արծիվները:

— Մենք արտույտներն ենք,— ասացին արտույտները:

— Մենք ճնճղուկներն ենք,— ասացին ճնճղուկները:

— Ինչո՞ւ եք իմ կողքերին շարվել,— ասաց առվակը:

— Շարվել ենք, որ մեզ ջուր տաս,— ասացին թռչունները:— Դու մեզ ջուր պիտի տաս, որ մենք չծարավենք:

— Հա՛, հա՛, հա՛,— ծիծաղեց առվակը:— Ջուրն ինչ է որ՝ տվի:

Բայց արդեն առաջ էր անցել, և թռչունները նրան չլսեցին: Ծանծաղ, հարթ ափերով հունը արդեն խորանում էր, և մի քիչ գնալուց հետո նա այլևս շուրջը չէր տեսնում: Հունի պատերից թելիկ-մելիկ, փափկամազիկ արմատներ էին կախվել, և առվակը էլի զարմացավ.

— Դո՞ւք ովքեր եք,— ասաց նա:

— Մենք ծաղիկներն ու խոտերն ենք,— ասացին ծաղիկների ու խոտերի արմատները:

— Դուք է՞լ եք ջուր ուզում,— ասաց առվակը:

— Մենք առանց քո ջրի կչորանանք,— ասացին արմատները,— դու մեզ ջուր կտա՞ս:

— Տվի,— կանչեց առվակը,— ինչքան ուզում եք՝ վերցրեք:

Բայց արդեն արեգակը շատ էր բարձրացել, և զարթնել էին ծաղիկները, խոտերը, թռչունները: Ծաղիկները բուրում էին, խոտերը սվսվում ու ծփում էին, թռչունները ճռվողում ու երգում էին, և ամենից բարձր, երկնքի կապույտի վրա, շեկ փայլում ու բոլորին տաքացնում էր արեգակը: Առվակը, հունի քարերին հանդիպելով՝ վեր-վեր էր թռչում, որպեսզի բոլորին տեսնի, բայց միայն ցայտքերն էին կարողանում ափերից դուրս գալ: Եվ ահա մի թերև, ալիքի պես շունչ շոյեց նր-

բաՆ, ու Նա հանդարտվեց։

— Դու ո՞վ ես,— շուրջը Նայելով ու բաՆ չտեսՆելով ասաց Նա։

— Ես սարի հովՆ եմ,— կողքերից համատարած շշՆջաց իՆչ-որ մեկը և բազմաթիվ բույրերով զարդարեց առվակիՆ։

— Ես քեզ չեմ տեսՆում,— ասաց առվակը և հիշելով շարուՆակեց։— Դու է՞լ ես ջուր ուզում։

— Չէ,— շշՆջաց սարի հովը,— ես քո պաղությունից եմ ուզում, որպեսզի տաՆեմ հովիտՆերը և հՆձվորՆերիՆ հովացՆեմ։

Նա պլիք-պլիք երկարեց առվակի հուՆի վրա։

— Հիմա քեզ տեսՆում եմ,— ասաց առվակը։— Տար քո ուզածը։

Շշ՜շ շշՆջաց սարի հովը ու իջավ սարից։

— ԳՆացի՜Նք,— զրՆգալով կաՆչեց առվակՆ ու առաջ աՆցավ։

Մի քիչ էլ՝ ու Նրա շուրջը շարվեցիՆ ոչխարՆերը, այծերը, շՆերը և հովիվը։

— Փոքրիկ առվակ, ջրիկՆ ուրախ,—ասաց հովիվը,— դու մեզ էլ ջուր կտա՞ս։

— Դու ի՞Նչ գիտես, որ ուրիշՆերիՆ էլ եմ տվել,— ասաց առվակը։

— Է՜,— ասաց հովիվը,— ես քառասուՆ տարի է էս սարի վրա եմ ու գիտեմ, որ դու բոլորիՆ ջուր տալով, ջուր տալով գալիս ես։

— Դու իՆձ ճաՆաչո՞ւմ ես,— ուրախացավ առվակը։— Ախր ես ոչ մեկիՆ չեմ ճաՆաչում։ Բա դու իՆչպե՞ս ես իՆձ ճաՆաչում։

—Քեզ բոլորՆ եՆ ճաՆաչում,—ասաց հովիվը,— և ով ճաՆաչում՝ սիրում է քեզ։ Գիտե՞ս հիմա հովիտՆերում ու գյուղում քեզ Նոց եՆ սպասում։

— Հովիվ-ախպեր, դե քո ջուրՆ առ, ես վազեմ,— աՆհամբեր կաՆչեց առվակը և մի պահ հաՆդարտվելով, որպեսզի հոտը կարողաՆա ջուր խմել, սլացավ առաջ։

Բայց սարալաՆջՆ արդեՆ վերջացել էր, հուՆը ձորակ էր դարձել, իսկ արեգակը հասել էր երկՆքի մեջտեղը։ ՀովիտՆերի ձայՆերը խուլ ու հոգՆած էիՆ, ձորակի օդը աՆշարժ էր, իսկ առվակը էլ չէր կարողաՆում արագ գՆալ։ «—Էս ի՞Նչ շոգ է»,— մտքում կրկՆում էր Նա ու փորձում արագ գՆալ, որովհետև ՆրաՆ թվում էր, թե էլի պիտի վերադառՆա սարի պաղ կատարը։

ՀովիտՆերում հՆձվորՆերը առվակի ափիՆ Նստել, հաց էիՆ ուտում։

— ՀՆձվորՆերը էդ դո՞ւք եք,— ասաց



առվակը։— Բարև ձեզ, հնձվոր եղբայր-ներ։

— Բարին քեզ հետ, առվակ եղբայր,— ասացին հնձվորները,—էս ի՞նչ պաղ ջուր ես բերում։

— Խմեք, խմեք, գնամ պիտի,— ասաց առվակը։— Հիմի ինձ ո՞նց են սպասում։

— Չէ,— ասացին հնձվորները,— էլ արագ մի գնա, հիմի էլ երեխեքն են քեզ սպասում։ Է՜, ներքևում գյոլ են արել, ուզում են լողանան։ Բա որ քո էս սառը ջրում մրսե՞ն։

— Էդ երեխեքն ովքե՞ր են,— ասաց առվակը,— ես երեխա չեմ տեսել։

— Էդ՝ մեր Հովիկ տղեն է։

— Էդ՝ մեր Անահիտ աղջիկն է։

— Էդ՝ մեր Անուշիկ թոռնիկն է։

— Էդ՝ մեր Ծովիկ բալիկն է։

— Էդ՝ մեր Տիգրանիկ տղեն է,— միասին ասացին հնձվորները։

— Հե՜յ, երեխեք, գալիս եմ,— անհամբեր կանչեց առվակն ու թավալգլոր վազեց։

Հովիտներից ցած դաշտերն էին ու գյուղը, որտեղ շոգն ավելի էր ուժեղ։ Եվ լողացան երեխաները, լողացան սագերը, հետո հորթուկն եկավ, լողացավ, խոճկորն եկավ, լողացավ, քուչին եկավ, հովացավ, իսկ առվակը հոգնած սպասում էր։ Մինչ այդ արեգակը թեքվեց ու մայրամուտ գնաց։

Այգում, ծառերի տակ, հեքիաթ պատմող Արութ պապը փեթակներն էր նայում։ Նայեց, վերջացրեց ու մեծ բահն ուսին գնաց առվակի կողմը։

— Փոքրիկ առվակ, ջրիկն ուրախ,—ասաց Արութ պապը,— ի՞նչ ես տխրում մենակ-մենակ։

Առվակից մինչև Արութ պապի բոստանը փոքրիկ հուն կար։ Արութ պապը այդ հունով առվակին բերեց իր բոստանը և լուռ ժպտաց։

— Արևն անցավ, մութը ընկավ,— ասաց Արութ պապը,— դու էլ արի քնելու։

Առվակը հավաքվեց ու մարգ առ մարգ ջուր տվեց կարտոֆիլին, խնձորենիներին ու տանձենիներին։ Բահը զնգաց, հողը ուռավ, ու Արութ պապը հոգնեց։ Եվ այդ ժամանակ եղավ գիշեր, որպեսզի բոլորը քնեն ու սարի աղբյուրից հավաքվող նոր առվակին սպասելու համբերություն ունենան։



ԱԶԱՏ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

# «Վաան հայրենյաց...»

19-րդ դարում արևմտահայ մտավոր կյանքի կենտրոնը Կոնստանդնուպոլիս քաղաքն էր, Թուրքիայի այն ժամանակվա մայրաքաղաքը (այժմ այդ քաղաքը կոչվում է Ստամբուլ)։ Այդտեղ է անցել արևմտահայ նոր բանաստեղծության հիմնադիրներից մեկի՝ Մկրտիչ Պեշիկթաշլյանի կյանքը։

Առհասարակ 19-րդ դարի հայ բանաստեղծության առաջին թեման հայրենասիրությունն էր։ «Ազգի վիճակը ծանրացավ սրտիս»— Նալբանդյանի այս խոսքը կարծես այդ գրականության բնաբանն է։ Բոլոր գրողների երազանքն էր թուրքական տիրապետությունից հայրենիքը տեսնել ազատ։

Պեշիկթաշլյանի բնության երգերն անգամ շնչում են խորին հայրենասիրությամբ. ահա «Գարուն» հանրահայտ բանաստեղծությունը.

**Ոհ, ի՞նչ անուշ և ի նչպես զով**
**Առավոտուց փըչես, հովիկ,**
**Ծաղկանց վըրա գուրգուրալով**
**Եվ մազերուն կուսին փափկիկ,**
**Բայց չես հովիկ իմ հայրենյաց,**
**Գընա անցիր սըրտես ի բաց։**

Այն ամենը, ինչ հայրենիքինը չէ, բանաստեղծը վանում է իրենից, վանում է նույնիսկ առավոտյան հովիկը, թռչնիկի սրտագին դայլայլը, վտակի մրմունջը։ Ցավով, կարոտով փնտրում է հայրենականը.

**Թեպետ թռչնիկն ու հովն Հայոց**
**Ավերակաց շրջին վերա,**
**Թեպետ պղտոր վըտակն Հայոց**
**Նոճիներու մեջ կը սողա,**
**Նոքա հառաչք են Հայրենյաց,**
**Նոքա չերթան սըրտես ի բաց։**

1862 թ. բռնկվեց Զեյթունի ապստամբությունը։ Կիլիկիայի փոքրիկ հայկական քաղաքի բնակիչները լավ դաս տվին թուրք բռնակալությանը՝ կասեցնելով նրա բազմահազարանոց բանակի շարժումը, ու վերստին հաստատեցին իրենց կիսանկախ գոյության իրավունքը։ Խանդավառությամբ համակվեց ողջ հայությունը։ Ահա այդ ժամանակ Պեշիկթաշլյանը գրեց բանաստեղծությունների մի փոքրիկ շարք, որոնք զեյթունցյան հերոսամարտերի լավագույն գը-

րական արձագանքր եղան։ Դրանցից մեկր կոչվում է «Մահ քաջորդվույն»։ Կռվում մահացու վիրավորված պատանին դիմում է մորը, մեռնելուց առաջ նրան խնդրելով. «Ուրախ լուրեր տար ի Զեյթուն»։ Հայերը հաղթել են, և զեյթունցի պատանու համար այդ է գլխավորը։ Այս բանաստեղծությունը, ի թիվս Պեշիկթաշլյանի այլ բանաստեղծությունների, երգ է դարձել և երգվել սերնդեսերունդ։

Նույնքան տարածված է ու սիրված «Թաղումն քաջորդվույն»-ը, որ այդ շարքի թերևս ամենախրոխտ ու տպավորիչ բանաստեղծությունն է։ Նրա ամեն մի տողը համակված է ապստամբական խստաշունչ առօրյայի մթնոլորտով։ Թաղում են մարտում զոհված պատանուն։ Չկան փողեր, չկա ողբ ու լացուկոծ։ Դրա փոխարեն ամբողջ բնությունն է սգում քաջ պատանու մահը.

**Ոչ փող զարկինք, ոչ արձագանք լեռնասույզ**
**Սարե ի սար չարաշըշուկ տարին լուր.**
**Ու երգեցինք ողբոց երգեր սրտահույզ,**
**Երբ պատանվույն բացինք մըռայլ փոսին դուռ։**

**Գիշերական մունջ ըստվերներ շուրջ կային,**
**Երբ հրացանի կոթով ըզհող փորեցինք.**
**Լուսին միայն դողդոջ շողայր մեր գլխին,**
**Սուգ էր պատել ըզդաշտ, բըլուր և երկինք։**

Նրան արտաքին պաճուճանքներ պետք չէին։ Եվ հիրավի.

**Բայց երբ գլուխն ի բարձ դրինք հողաշեն,**
**Տեսանք ըզգեղ ճակտին ու վերքըն պայծառ,**
**«Ո՞վ պատանյակ, ըսինք ամենքս մեկ բերնեն,**
**Վասն հայրենյաց մեռար, դու շա՜տ ապրեցար»։**

«Վասն հայրենյաց մեռար, դու շատ ապրեցար»— ահա մի խոսք, որ մեր ժողովրդի դարեր ի վեր մղած բազում մարտերի կապակցությամբ շատ է ասվել։ 5-րդ դարում Եղիշեն գրեց Վարդանանց նահատակ քաջերի համար՝ «Մահ ոչ իմացեալ մահ է, մահ իմացեալ՝ անմահություն»։ Նրանից 1400 տարի հետո զեյթունցի պատանու հերոսական մահը իր քաջ նախորդների՝ Վարդան Մամիկոնյանի ու նրա զինակիցների նահատակության շարունակությունն էր։

Այսպես, մի մենավոր գերեզման, կորած հայրենի լեռներում, որի վրա ոչ շքեղ արձան կա և ոչ իսկ գիր։ Այսպես է ավարտվել հայրենիքի ազատության համար մարտնչած հազարավոր պատանիների կյանքի ուղին և՛ Զեյթունում, և՛ Մուսալեռում, և՛ Արևմտյան Հայաստանի լեռներում։ Պեշիկթաշլյանը իր բանաստեղծության մեջ արտահայտեց հայ ազատագրական շարժման կարևորագույն կողմերից մեկը, այդ շարժման մասնակիցների անմնացորդ նվիրվածությունը ժողովրդի ազատության գործին։

Ապրում է հայ ազատագրական մարտերում զոհվածների ոգին ու հիշատակը Պեշիկթաշլյանի խրոխտ բանաստեղծության մեջ, և այսօր էլ խորապես հուզում են մեզ նրա ոգեշունչ տողերը, և ամենից էլ հնչում է այն միտքը, թե՝ «... վասն հայրենյաց մեռար, դու շա՜տ ապրեցար»։



# ԴԻԼԻՋԱՆԻ ԱՐԳԵԼՈՑԸ

Աղստև գետի միջին հոսանքի ավազանում, Դիլիջան քաղաքի շուրջը տարածված է Դիլիջանի ինքնատիպ արգելոցը: 28,8 հազար հեկտար տարածքի շուրջ 90 տոկոսը զբաղեցնում է անտառային զանգվածը: Արգելոցը ծովի մակերևույթից 1200—2000 մետր բարձրության վրա է գտնվում:

Հորիզոնի վրա ու հորիզոնից վեր փայլատակում ու որոտում են նորաբաց գարնան առաջին ամպրոպները: Որոտի հեւ մթամած, երկնքի պատռվածքի միջով հովիտների վրա արև է թափվում: Անցնում են օրեր, և ծաղկում են անտառազանգվածները, լցվում կենդանի ձայներով: Բայց արևի ջերմացնող շողը չի հասնում տխուր հայացքը ներքևի հովիտներին պարզած գորշ արջին: Մկանները պըրկած լուսանը չի կատարում իր մահաբեր ցատկը, ու անտառային քնամուկը չի հայտնվում նրա զորեղ ճանկերում: Իր գեղեցիկ թևերը չի թափահարում ու հեռուները թևածում կասպիական ուլարը...

Այս ամենը տեղի չի ունենում, որովհետև արջը, լուսանը, քնամուկն ու ուլարը չկան, արգելոցի թանգարանում տեղ են գտել միայն նրանց խրտվիլակները: Երեխաները, որ թանգարանում դիտում են այս ամենն ու, այնուամենայնիվ, մի տեսակ թաքուն երկյուղով սպասում լուսանի ցատկին, դեռ այնքան էլ ուշադիր չեն այն թվերի, փաստերի ու քարտեզների հանդեպ, որոնք պատմում են արգելոցի հեքիաթային աշխարհի մասին:

Նրանք ավելի շատ սիրում են դիտել կենդանի անկյունը, որտեղ անտառային կատուն փայտերի վրա ճարպկորեն շարժվելու իր արվեստն է ցուցադրում: Ինչպես Մթնաձորի կուսական անտառում՝ գորշ արջը թավալգլոր է լինում մոտալուտ գարնան շնչից, իսկ վարազները, իսկապես, ժանիքներով ակոսում են ձյունից արթնացող փխրուն հողը: Պարսկական սկյուռը, փորսուղը, քարակզաքիսը, ոզնին, անտառային քնամուկը, ջրասամույրը առավոտյան այս ժամին ննջում են իրենց կիսամութ կացարաններում: Կուղբերն ու նապաստակները կրծոտում են ձեռքն ընկած արմտիքը, իսկ այծյամը, գեղեցիկ, թախծոտ այծյամը՝ աչքերում կարոտ, ինչ-որ բանի է սպասում: Գուցե նրա սլացիկ մարմնում արթնացել է կյանքի խլրտոցը, որ ձայնն է արթնացող բնության: Կամ գուցե այծյամն սպասում է հոգատար խնամակալին, որ ամեն օր գալիս է ճիշտ նույն ժամին, բացում ուսուրական բծավոր ու կովկասյան ազնվացեղ եղջերուների, եվրոպական այծյամների «ճաշարանի դուռը» և փոքրիկ կերանոցները լցնում ուրցահոտ խոտով ու չորացրած ծաղկամատներով:

... Ցուցավահանակները պատմում են, որ Դիլիջանի պետական արգելոցը հիմնադրվել է 1958 թվականին, նախկին անտառտնտեսության հիմքի վրա: Այժմ այն միավորում է երեք անտառտնտեսություն. Դիլիջանի, Գոշի և Կույբիշևի: Արգելոցում աճում են 22 տեսակի ծա-







ռեր, որոնցից են կաղնին, բոխին, թեղին, կարմրածառը, լորենին: Մեծ հետաքրքրություն է ներկայացնում Ահնաբաթի կիրճում տեղավորված՝ իր տեսակի մեջ ինքնատիպ կարմրածառերի պուրակը, որ զբաղեցնում է 32 հեկտար: Արգելոցի տարածքում շատ են բուժախոտերը, սնկերն ու հատապտուղները:

Վիճակագրության սիրահարների համար, անշուշտ, հետաքրքիր կլինի իմանալ, որ Դիլիջանի արգելոցում կան կաթնասունների 35, թռչունների 120, սողունների 10, երկկենցաղների 3 և ձկների 6 տեսակներ: «Բնակիչների» մեջ կարելի է հանդիպել ոչ միայն հազվագյուտ, այլև անհետացող տեսակների: Այնպիսիները, որոնք գրանցված են բնության պահպանության Կարմիր գրքում: Դրանցից են կասպիական (հայկական) վայրի հընդկահավը, կովկասյան մայրահավը, սպիտակագլուխ անգղը, արքայարծիվն ու մորուքավոր արծիվը:

Արգելոցի տարածքում կենդանիները ոչ միայն պահպանվում, այլև սնուցվում են տալիս, բազմանում: 1968 թվականին այստեղ բերված ուսուրական եղջերուների թիվն, օրինակ, քառապատկվել ու հնգապատկվել է: Լավ են բազմանում նաև եվրոպական այծյամները, վայրի խոզերը: Նույնիսկ Սևանա լճից այստեղ վերաբնակեցված իշխանը համեմատաբար արագորեն հարմարվել է տեղի ջրերին ու բազմանում է կարմրախայտի նման: Այս ամենը հոգատար բնության ընձեռած նպաստավոր պայմանների և արգելոցի աշխատակիցների սրտացավ վերաբերմունքի արդյունքն է: Նրանք անում են ամեն ինչ, որպեսզի բնության ու կենդանական աշխարհի կապը դառնա անխզելի ու ամուր: Ցուրտ ձմռանը, օրինակ, երբ կենդանիները դժվարանում են ինքնուրույն սնունդ հայթայթել, նրանք բացատների երևացող տեղերում կերամաններ են պատրաստում ու աղակտորներ դնում:

Ամեն մեկն իր տեղամասում հոգ է տանում կենդանիների ձմեռումն ապահովելու համար, կատարում անտառատնկումներ, հաշվարկում բուսական ու կենդանական տեսակները:

Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Լուսանկարները՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

МԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

## Տիկո տղան

— Տիկո, տղա, մի ծառ տնկի:
— Պապի գործն էր, նա էր վարպետ,
— Առ այս բահը, մտիր այգի:
— Հայրս կանի եղբորս հետ:
— Իսկ ի՞նչ կասես ջուր բերելուն:
— Ո՞ւմ համար ես բերեմ ջուրը,
Ես տանը ջուր ե՞րբ եմ խմում,
Երկու քայլ է մեր աղբյուրը:
— Որ այդպես է,
Եկ, հորթուկի կապը բռնիր
Ու տար արոտ.
— Չէ, չեմ կարող,
Աշակերտ եմ, ոչ թե հովիվ,
Պապս էր հովիվ՝
Ամեն տարի սարից գալիս
Գառնուկ էր ինձ նվեր տալիս:
— Նաև դու ես այգու տերը,
Վեր կաց, քշիր, խաղողն հիմա
Կերան անտեր էդ ծտերը:
— Բա մեր շունը պարա՞պ մնա:
— Արի, արի, մտիր պարտեզ,
Գոնե մի փունջ
Ծաղիկ բեր մեզ:
— Դա աղջկա գործ է արդեն,
Տղա եմ ես...
Ու շուռ եկավ խիստ բարկացած,
Դուռը բացեց, իջավ պարտեզ.
«Այս դասերն էլ չվերջացան՝
Մարդ ազատվեր...»:
Վաղը ինչ-որ անգիր ուներ,
Էլի ինչ-որ կարդալու դաս՝
«Այնքան բան են դնում վրաս՝
Սովորելու էլ ո՞ւժ մնաց...»:

ԳՈՒՐԳԵՆ ՍԱՐԳՍՅԱՆ

## Տաղ մայրամուտի

Հորիզոնի զմայլելի շառագունում—
հետք անթարգման՝
լոկ արժանի
արևային վեհ ընթացքի...

Իր ծագումից
մինչ այս պահը սքանչելի
լույս անձրևեց,
ու վաստակած սուրբ մոր նման
ննջն է, ահա, իր վայելում՝
թեթև-խաղաղ...

Կապույտ քողն է իջնում անտես,
մեղմ ծփալով,
ու ծփանքից պլիքվում է օդը մաքուր
և համբույրի քնքշությամբ իրար հպում
տերևները երկինք միտող բարդիների...

Ու լցվում է սիրտդ ափեափ
հորիզոնի շառագույնով,
քաղցրահնչուն սոսափյունով տերևների...

Ու լցվում է սիրտդ ափեափ
համասփյուռ ջինջ կապույտով
և... հրճվում մանկան նման,
և սպասում մանկան նման
հար անհամբեր՝
այս ամենին՝
նոր տեսության:

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ





ԳԵՎՈՐԳ ԱԲԳԱՐՅԱՆ

# ՄԱՏՅԱՆԵՐԻ «ԼՌՈՒԹՅՈՒՆԸ»

Լուսանկարը՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

1927 թվականի հունիսի 5-ն էր: Հայաստանում չկար ոչ մի կտոր ասֆալտապատ ճանապարհ: Ծիկացած փոշու մեջ ընթացող շիկահեր ձիերով լծված կառքը Երևանից հասավ Էջմիածին և կանգ առավ Մայր տաճարի բակի դարպասների առջև: Կառքից իջան Ավետիք Իսահակյանն ու Դերենիկ Դեմիրճյանը, ներս մտան ու գնացին Մատենադարան: Մատենադարանի պատվավոր այցելուների մատյանում նրանք այդ օրը ահա թե ինչ տողեր թողեցին. «Ինչ քաղցր է նստել հայրենի հինավուրց հարկի տակ և հոգով հաղորդակից լինել դարերի խորհրդին ու երազին: Ավետիք Իսահակյան»: «Տասնհինգ դարեր են լռում այս պատերի մեջ, և ես լսում եմ նրանց լռությունը: Դերենիկ Դեմիրճյան»:

Մատենադարանը վաղուց արդեն տեղափոխվել է Երևան:

Ով արդեն մեկ անգամ Մատենադարանում եղել է, գիտե, որ այցելուներին առաջին դիմավորողները՝ բարձրադիր շենքի առջև կանգնած բազալտակերտ Մեսրոպ Մաշտոցը, Մովսես Խորենացին, Անանիա Շիրակացին և մեր մյուս մեծե-

րըն են: Խոնարհվենք նրանց առջև և ապա մտնենք Մատենադարան: Ամենից առաջ տեսնենք այն մատյանը, որից մի նախադասություն քաղված և փորագըրված է բազալտակերտ Մաշտոցի թիկունքը պատսպարող պատին. «Ճանաչել զիմաստութիւն և զխրատ, իմանալ զբանս հանճարոյ»: Սա հայերեն տառերով գրված առաջին գրքի անդրանիկ բառերն են: Այդ գիրքը կոչվում է «Գիրք առակաց Սողոմոնի» կամ «Առակաց գիրք»: Բիբլիական ավանդության համաձայն, հին դարերում ապրել է Սողոմոն անունով մի իմաստուն մարդ, որի խրատների գիրքը կոչվել է նրա անվամբ: Մեսրոպ Մաշտոցը տեսնելով, որ բոլոր զարգացած ազգերն իրենց լեզուներով կարողանում են օգտվել խրատներից, որոշում է հայերեն տառերն ստեղծելուց անմիջապես հետո այդ գիրքը թարգմանել նաև հարազատ ժողովրդի լեզվով: Անմահ ուսուցչապետի կենսագիր Կորյունը հայտնում է, որ թարգմանությունը կատարել են երեք հոգի՝ Մաշտոցն ու իր երկու աշակերտները, որոնցից առաջինի անունն էր Հովհան (Եկեղյաց գավառից), երկրորդինը՝ Հովսեփ (Պաղանական տնից). «առաջնոյն Յովհան անուն կոչէին, յԵկեղեաց գաւառէն, և երկրորդին Յովսէփ անուն՝ ի Պաղանական տանէն»:

Ուսուցչի և աշակերտների աշխատանքում եղած բուն ձեռագիրը, դժբախտաբար, դարերի ընթացքում կորել է: Մեզ են հասել միայն նրանից արտագրված օրինակները: Ինչպե՞ս են հասել այդ տոկունները: Ի՞նչ աղետավոր ճամփաներով են անցել՝ մինչև որ հասել են իրենց այսօրվա ապահով հանգրվանը: Ահա այս հարցերի պատասխանն է, որ իմացվում է մատյանների լռությունից: Մագաղաթները լռում են, սակայն նրանց վրա մընացած այրվածքներից լսվում են հրդեհվող վանքերից ձեռագիրը դուրս հանող և սերունդների համար փրկող մարդկանց աղաղակները:

Մատենադարանում պահվող «Առակաց գրքի» ամենաբախտավոր օրինակներից մեկը շուտով բոլորելու է իր 700-ամյակը: 1295 թվականին ավելի հին մի մատյանից ընդօրինակված այս ձեռագիրը, որը Մատենադարանում կրում է 180-րդ համարը, պատկանել է հայոց թագավոր Հեթումին: Կիլիկիայի հայկական արոտավայրերում վազվզած հարյուրավոր գառնուկներ ու հորթեր են մորթվել 564



*Էջմիածնի Մատենադարանը*



*Ձեռ. 6864 Այրված Ավետարան, XVII դար*

մագաղաթյա թերթից բաղկացած գիրքը պատրաստելու համար: Թագավորը չի խնայել ոչ մի միջոց՝ Մաշտոցի գլխավորած թարգմանչական եռյակի և Թարգմանչաց դարի մյուս ներկայացուցիչների թարգմանած նյութերն ի մի հավաքելու և

իր ժողովածուում ընդօրինակելու համար: Մատյանի գրադաշտերը մարգարտաշար բոլորագրով զուգելու և մագաղաթները բարձրարվեստ մանրանկարներով զարդարելու նպատակով թագավորը վարձել է ժամանակի լավագույն նկարիչներին ու գրիչներին, գնել է թանկագին ներկեր, տրամադրել է ոսկի՝ զարդերը ոսկեզօծելու համար: Նրա ջանքերով ու ճաշակով ստեղծված արքայական մատյանը փաստորեն հայ առաջին թարգմանիչների երկերը պարունակող մի գիրք-գրադարան է, որի մեջ «Առակաց գրքից» բացի ընդօրինակված և ամփոփված են նաև «Ծընընդոց գիրքը», «Երգ երգոցը», «Սաղմոսները», ժողովողի գիրքը և հինգերորդ դարում հայերեն թարգմանված մյուս բիբլիական գրքերը:

Ասացինք, որ «Գիրք-գրադարանը» Մատենադարանում պահվող ամենաբախտավոր ձեռագրերից է: Բախտավոր է նրանով, որ 700 տարի ապրել է և սերունդներին է հասցրել Թարգմանչաց դարի գլուխգործոցները: Բայց եկեք լսենք նաև այս մատյանի լռությունը: Տեսնենք՝ արդյոք, հեշտությա՞մբ է նա դիմադրել դարերին: Նախ տեսնում ենք, որ կազմը ձեռագրից անջատված է: Ոսկեդրոշմ շագանակագույն կաշին լռում է, բայց նրա լռությունից լսում ենք այն հնոցը, որը թողել է վայրագ թշնամին՝ ոսկեզօծ կազմը ձեռագրից անջատելու պահին: Կազմի վրա գտնված ճարմանդներից և զարդերից մնացած հետքերից երևում է, որ թալանչին կողոպտել է ձեռագրի զարդարանք անգին քարերը, կողոպտել ու տարել է հետը: Թարգմանչաց ժառանգորդները երկար ժամանակ որոնել են նախնիների կտակած հարստությունը: Ձեռագրի 562-րդ մագաղաթի վրա Արիստակես անունով մի մարդ մակագրել է «Հինգ և վեց ամ ի պանդխտութիւն շըրջեցայ վասն սորա»: Հինգից վեց տարի դեգերել է, որպեսզի գտնի ձեռագիրը: Եվ վերջապես գտել է ու փրկել մեծ ծախսերի գնով. «Յորժամ գնացաք ի Տիգրանակերտ՝ պատահեցաւ մեզ սուրբ գիրքս՝ մեծագին և բազմածախ»: Թագավորին պատկանած ժողովածուում գտնվող խրատները հայերեն են թարգմանվել, որպեսզի հայ թագավորներին սովորեցնեն չսպառնալ ժողովրդին, «Սպառնալիք թագաւորի նման է մռնչելոյ առիւծու, զուարթութիւն նորա՝ իբրև զցօղ ի վերայ դալարոյ»: Դալար բույսի վրա իջած ցողի նման՝ զվարթ խոսքը բուժում է մարդկանց և կապում է հայրենի հողին, չի թողնում լքել հայրենիքը. «Որպէս թռչուն, որ թռանի ի բունոյ իւրմէ, նոյնպէս և մարդ ստրկանայ, յորժամ օտարանայցէ յիւրմէ տեղւոյ»: Օտարության մեջ գտնըվող մարդն ստրկանում է ուրիշների օրենքների առջև: Եղբայրը եղբորից հեռու չպետք է բնակություն հաստատի. «Լաւ է բարեկամ մերձակայ, քան զեղբայր ի հեռաստանէ բնակեալ»: Եղբորից օգնություն ստացող եղբայրը նման է ամրակուռ քաղաք-ամրոցի. «Եղբայր յեղբօրէ օգնեալ՝ իբրև զքաղաք ամուր»: Մրջյունները՝ թեև թագավոր չունեն, բայց այնքան գիտակից են, որ անհրաժեշտության պահին իրար գլխի են հավաքվում, կարծես թե մեկի հրամանով. «զօրաժողով լինին իբրև ի միոջէ հրամանէ»:

Մաշտոցյան եռյակը ձգտել է «Առակաց գիրքը» թարգմանել բանաստեղծական շնչով: Եթե նրանց թարգմանածը վերաշարադրենք մեր այսօրվա խոսակցական լեզվով, կստանանք չափածո առակներ: Այսպես, օրինակ.

Ընկերոջ համար ով հոր է փորում՝
Ինքն է հայտնվում իր փորած հորում:

Սույն խրատի գրաբար բնագիրը հետևյալն է. «Որ փորէ խորխորատ ընկերի իւրում՝ ինքն լցցէ զնա»: Մաշտոցի ժամանակ այսպես էին գրվում ոտանավորները, այսինքն՝ առանց տողերի բաժանելու և առանց տողերը միևնույն վերջավորություններով ավարտելու: Մեկ այլ խրատ Մաշտոցը շարադրել է այսպես. «Որ հայհոյէ զհայր կամ զմայր՝ շիջցէ լոյս նորա»: Աշխարհաբարի վերածելիս կստացվի այսպես.

Ով հայհոյում է իր ծնողներին՝
Խավարն է իջնում նրա աչքերին:

Մեր բերած օրինակները ցույց են տալիս, որ հայ դպրության հիմնադիրն իր ստեղծած տաղերով հայերեն առաջին գիրքը գրելու համար ընտրել է այնպիսի խրատներ, որոնք պետքական լինեն ժողովրդի բոլոր խավերին, սովորեցնեն հայրենասիրություն, ծնողասիրություն, եղբայրասիրություն և այլն:

Դժբախտաբար Թարգմանչաց դարի ոչ բոլոր թարգմանիչների անուններն են մեզ հասել: Մաշտոցյան եռյակին կարելի է ավելացնել նաև Սահակ Պարթևի, Եզնիկ Կողբացու, Ղևոնդեսի, Խոսրովիկի, Կորյունի և մյուս այն մատենագիրների անունները, որոնք միաժամանակ նաև

թարգմանությամբ են զբաղվել: Բայց թարգմանությունների մեծ մասի հեղինակների անունները մեզ հայտնի չեն: Օրինակ, մենք չգիտենք, թե ում ենք պարտական Հեթում թագավորի ժողովածուում ընդօրինակված «Սիրաքի գրքում» հանդիպող հետևյալ խրատի համար. «Կանայք և գինի կործանեն զիմաստութիւն»: (Հիշենք Թումանյանի տողերը. «Ի՞նչը կհաղթի կյանքում հերոսին, թե չլինեն կինն ու գինին»): «Ժողովող» կոչվող գրքի խրատներից մեկը ուսուցանում է. «Շուն, որ կենդանի՝ լաւ է, քան զառեւծ մեռեալ»․ կենդանի շունը մեռած առյուծից լավ է:

«Երկրորդումն օրինաց» կոչվող գրքում կան բնության պաշտպանությանը վերաբերող օրենքներ. «Եթէ դիպեցիս բունոյ հաւուց... մի՛ առնիցուս զմայրն հանդերձ որդովքն. արձակելով արձակեսցես զմայրն»: Թռչունների բնում գտնվող մորն ու ձագերին հանդիպելիս պետք է մորն ազատ թողնել, որպեսզի ապագայում նոր ձագեր բերի և հարստացնի բնությունը:

Թռչուններից ամենասիրելին աղավնին է, և «Երգ երգոց» կոչվող գրքի հեղինակն ամենասիրելի էակին համեմատում է աղավնու հետ.

«Ահաւադիկ կաս գեղեցիկ, մերձաւոր իմ, ահաւադիկ կաս գեղեցիկ, աչք քո աղաւնիք, ընդ քողով քով (քո քողի տակ)... Արի՛ եկ, մերձաւոր իմ, գեղեցիկ իմ, աղաւնի իմ...)»:

Հինգերորդ դարի թարգմանիչները թարգմանել են ոչ միայն Հեթում թագավորի «գիրք-գրադարանում» հավաքված գրքերը, այլև մի շարք ուրիշ գրքեր: Նոր ստեղծված մեսրոպյան գրերով սեփական գրականություն ստեղծելու ցանկությունն այնքան է ոգևորել մեր առաջին թարգմանիչներին, որ նույնիսկ արձակ երկերը թարգմանել են բանաստեղծական շնչով: Օրինակ, 4-րդ դարի հույն մատենագիր Բարսեղ Կեսարացու «Վեցօրեայ» կոչվող գրքի թարգմանիչը կարծես թե ոչ թե թարգմանում է ուրիշի գրածը, այլ ինքն իր բանաստեղծությամբ գովերգում է հայրենի բնությունը.

Մարգքըն ծաղկազարդք
Եվ դաշտք կանաչագեղք,
Արտքըն բուսարձակք
Եւ վիճակք պտղալիք,
Լերինք անտառախիտք
Եւ բլուրք պրկագեղք,
Ծառքըն վարսաւորք
Եվ տունկք հովանաւորք:

Կարծես թե կարդում ենք Արարատյան աշխարհի այն գովքը, որը շարադրել է Ղազար Փարպեցին իր «Հայոց պատմության» մեջ: Աղեքսանդր Մակեդոնացու պատմության անհայտ թարգմանիչը նույնպես հունարեն գիրքը թարգմանելիս կարծես թե չի զգացել, որ այն ստեղծվել է օտար աշխարհում: Պղատոնի, Արիստոտելի և այլոց փիլիսոփայական երկերը թարգմանելիս բարեխիղճ հայ թարգմանիչներն այնքան հարազատ են զգացել մեծ փիլիսոփաներին, որ աշխատել են նրանց գրած ոչ մի բառ չաղավաղել: Սա է պատճառը, որ այսօր հույն գիտնականները իրենց փիլիսոփաների երկերը հրատարակելիս օգտագործում են նաև հայերեն թարգմանությունները և նրանց միջոցով ուղղում են հունարեն բնագրում աղճատված կամ անհասկանալի մնացած այս կամ այն բառը:

Հինգերորդ դարի բոլոր թարգմանիչների վաստակները թվարկել հնարավոր չէ: Էլ չենք խոսում այն մասին, որ բոլոր վաստակները չէ, որ հասել են մեզ: Ուրեմն, բավարարվենք արդեն թվարկվածներով և շարունակենք մտովի շրջել Մատենադարանում, լսելու համար մատյանների լռությունը և հաղորդակից դառնալու դարերի խորհրդին:



Ձեռ. 180 Աստվածաշունչ, 1295 թ. Կիլիկիա
Գրիչ՝ Ստեփանոս, ստացող՝ Հեթում II թագավոր (1289—1307 թթ.)

ՋՈՒԼԻԵՏ ՄԱՏԻՆՅԱՆ

# Նա չէր ծնվել թռչելու համար

Նկարը՝ ԳԱՍՏԵԼԼՈ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ



Աշխարհի երեսին ծնվել էր մի Նարո, և ինչպես բոլոր նորածին հորթերը, փոքր էր։ Նա ուզում էր մեծ լինել։ Ուզում էր, բայց համբերություն չուներ։ Մի օր էլ, երբ մենակ մնաց՝ նայեց երկնքին.

— Ինչ կապույտ է, իսկական թռչելու երկինք։

Թռչունները ճախրում էին ազատության, բերքառատ դաշտերի ու նրանց կանաչելու երջանկության հետ։ Նրանք բարձր էին, ուրախ և թեթև։ Եվ քանի որ նրանք բարձր էին, ուրախ ու թեթև, երկնքով հիանալու զարմանալի սովորույթը դուրս չեկավ Նարոի գլխից։

Նարոն մարդկանցից լսել էր, որ երազները ավելի գեղեցիկ են, քան կյանքը... Եվ քանի որ լսել էր, որ երազներն ավելի գեղեցիկ են, քան կյանքը, որոշեց մշտապես երազել։ Երազելիս աչքերը փակում էր, երկար թարթիչները ձըգվում էին ներքև, և վրձնաձև պոչը մըտնում էր ոտքերի արանքը։ Այդ ժամանակ հովը մեղմորեն շոյում էր նրա մարմինը, և նա հաճույքից փշաքաղվում էր։ Հետո, տուն դառնալիս, այնպես էր քայլում դաշտամիջյան ճանապարհով, կարծես ասելիս լիներ՝ հովն էլ է իմը, հողն էլ... Դա Նարոյի կյանքի այն շրջանն էր, երբ դաշտավայրը հորիզոնի գծի հետ հատվելով, կազմում էր մի մեծ զրո։

Նարոն երազող էր, բայց քանի որ քայլում էր հողի վրա, շատ էր սիրում այն։ Նույնիսկ, խոնավ, ճահճոտ անտառներն էլ էր սիրում։ Իսկ ամենից շատ սիրում էր ծաղիկներ։ Տեսնելիս շրջանցում

էր, որ չտրորի։

Մի օր, երբ նա զմայլվում էր դաշտավայրի անսահմանությամբ և միտք էր անում, թե մինչև ողջ խոտը չարածի, օրը չի մթնի՝ խնձորենու ծառի վրա տեսավ զարմանալի մեկին.

— Դու ո՞վ ես…

— Բնության ցող, որ օդ եմ ելնում։

— Կարգին բան ասա, հասկանամ։

— Դու մեծ ես, էլի կմեծանաս, իսկ ես փոքր եմ, փոքր էլ կմնամ։

— Դու ինչո՞վ ես զբաղվում,— խոսքն առաջ տարավ Նարոն։

— Ծաղկից ծաղիկ եմ թռչում, իմ հույսըն եմ փնտրում։

Նարոն հանկարծակիի եկավ.

— Այդքան փոքր ես ու թռչո՞ւմ ես…

— Ես թռչելիս մեծանում եմ կամ ինձ թվում է, թե մեծանում եմ։ Ես հաստատ ոչինչ չգիտեմ։

— Երանի քեզ, որ հաստատ ոչինչ չգիտես ու թռչում ես։

Նարոն ռունգերը մոտեցրեց թիթեռին և օդն աղմուկով ներս քաշեց.

— Զգույշ, անճոռնի…

Նարոն նրբազգաց էր՝ վիրավորվեց.

— Եթե ես անճոռնի եմ, եթե ես էլի ինչ-որ վատ բան եմ.

Թիթեռը զգացվեց Նարոյի հուզմունքից.

— Դու լավն ես, աչքերդ էլ գեղեցիկ են, թախծոտ, յոճակների պես։

— Եթե այդ կարծիքին ես, և դա ճիշտ է, ես միշտ քեզ հետ կլինեմ։

Թիթեռը նայեց յոճի զրնգուն ջրերին ու ասաց.

— Դե ես գնամ, օրը մթնում է, ես չըպետք է մի տեղում այսքան երկար մընամ։

Թիթեռը թռավ։ Նարոն սկսեց միտք անել։ Եվ քանի որ մենակ էր, բոլոր մենակ մնացածների նման տխրեց.

«Նա այնքան փոքր է, բայց թռչում է»,— Նարոն ռունգերը վեր տնկած՝ երկնքին էր նայում…

Օրերն անցնում էին, և Նարոն գնալով ավելի քիչ երազներ էր տեսնում։ Մի օր էլ, երբ Նարոն նույն դաշտը մտավ, մի ծաղկի վրա կանգնած էր թիթեռը։ Նարոն որտեղից իմանար, որ այն օրվա թիթեռը այսօրվա թիթեռը չէր, որ այն օրվա ու այսօրվա մեջ հսկայական տարբերություն կա, քանի որ այն օրը արդեն անդարձ անցել, գնացել է։

— Բարի լույս,— ասաց ծանոթի պես,— գտա՞ր լույսդ…

Թիթեռը զարմացավ.

— Ո՞վ ասաց, որ ես լույս եմ փնտրում։

— Դա գաղտնիք չէ, բոլորը գիտեն, որ թիթեռները լույս են փնտրում։ Լույս։

Փնտրում ու չեն գտնում։ Էդ փնտրելն էլ գտնելու պես բան է։ Ահա տե՛ս, ես էլ…,— և Նարոն թռչելու փորձ արեց, ցատկեց։ Երբ նա ցատկեց, պարզապես ջրի մեջ ընկավ։ Այնքան զով էր յոճի ջուրը, որ Նարոն փնչացրեց։ Եվ երբ նա փնչացրեց ու նորից նայեց երկնքին՝ հաղաչանքը ջրի հետ կախվեց դնչիկի մազերից,— ուրեմն ես երբեք լույս չեմ գտնի և չեմ տեսնի երկիրը երկնքից,—տըրտընջաց նա։

— Լավ, Նարո, արի ես թառեմ դնչիդ, իսկ դու դունչդ բարձր-բարձր պահիր, և մենք քայլենք դաշտերով, սարերով, ձորերով, աշխարհով ու թող քեզ թվա, թե թռչում ենք, և եթե թռչում ենք, լույս ենք փնտրում։

Թիթեռը նստեց նրա դնչիկին, և հանդարտ լնգլնգալով ճանապարհ ընկան։ Ժամփորդության ընթացքում բազմաթիվ հրաշքներ տեսան՝ Արարատ սարը՝ ի… վեհափառ գագաթներով, Արարատյան դաշտն իր այգեստաններով… Նարոն երբ հոգնեց, նստեց, որ մի քիչ որոճա։ Որոճաց, որոճաց ու քնեց։ Երբ քնեց ու արթնացավ, գիշերն անցել էր և թիթեռը չկար։

— Վա՜յ,— բացականչեց նա,— գնեց հրաժեշտ տար…

Եվ այստեղ մեկն ասաց, որ թիթեռները կարճ կյանք են ունենում, մի օրվա, և այդ կարճ կյանքի ընթացքում չեն հասցընում իրենց փնտրածը գտնել, երբեք ոչ մի թիթեռ չի գտել իր փնտրածը։ Նարոն ուզեց լաց լինել՝ մեկ էլ մի ուրիշ թիթեռ եկավ, բազմեց նրա դնչին։ Նրանք հասկացան իրար և ճանապարհ ընկան։ Գնացին, գնացին, Նարոն հոգնեց, քնեց և երբ արթնացավ, գիշերը դարձյալ անցել էր, և դնչին նստած թիթեռը չկար… Սա կրկնվեց այնքան, մինչև Նարոն մեծացավ և դադարեց երազել։ Դրա մեջ մի քիչ էլ մայրն էր մեղավոր, որ խրատել էր, ասել՝ ավելի լավ է երազով տարվելու փոխարեն խոտ ուտես։

Գնալով Նարոն մեծանում էր և մեծ Նարո էր դառնում։ Եվ գնալով հասկանում էր, որ ինքը երբեք չի թռչի, որ ինքը թռչելու համար չի ստեղծված և որ իր համար կարևորը հաստատուն քայլելն է հողի վրա։



# ԱՎԵՏԻՔ ՏԵՐ-ՊՈՂՈՍՅԱՆ

Դարասկզբին Վաղարշապատից Լոռվա Վարդաբլուր գյուղ (այժմ ՀՍՍՀ Ստեփանավանի շրջանում) էին գնում հանճարեղ Կոմիտասը և 20 տարին նոր բոլորած, Էջմիածնի Գևորգյան ճեմարանի սան Ավետիք Տեր-Պողոսյանը. Ավետիքն իր սիրելի ուսուցչին ուղեկցում էր Լոռի՝ ժողովրդական երգեր գրառելու համար։

Վարդաբլուրի և շրջակա գյուղերի երգերը հայտնություն էին մեծ երգահանի համար. Հենց Վարդաբլուրում էլ այդ օրերին ծնվեցին հանրահայտ «Կալի երգը», ինչպես նաև «Լոռվա գութանի երգը»։ Ավետիք Տեր-Պողոսյանը ցնծության և հրճվանքի շատ պահեր պարգևեց իր սիրելի ուսուցչին՝ մեծ Կոմիտասին։

1880 թվականի հունվարի 15-ին, Վարդաբլուր գյուղում է ծնվել Ավետիք Տեր-Պողոսյանը, որին վիճակված էր դառնալ մեր մշակույթի և հատկապես բնագիտության ականավոր երախտավորներից մեկը։

Սկզբնական կրթությունը տեղի դպրոցում ստանալուց հետո մեկնել է Թիֆլիս՝ ուսումը շարունակելու հայտնի Ներսիսյան դպրոցում։ Ուսումնատենչ պատանին այնուհետև դարձել է Էջմիածնի Գևորգյան ճեմարանի ուսանող։ Դեռևս Ներսիսյան դպրոցում սովորելիս Ավետիք Տեր-Պողոսյանը մեծ սեր է ցուցաբերել բնական գիտությունների և հատկապես կենսաբանության նկատմամբ։ Այդ տարիներին, սակայն, բնագիտական բարձրագույն կրթություն հնարավոր էր ստանալ միայն Ռուսաստանում կամ եվրոպական բարձրագույն ուսումնական հաստատություններում։

1906 թվականին նա արդեն Լայպցիգի համալսարանի փիլիսոփայական ֆակուլտետի բնագիտության բաժնի ուսանող էր։

Լայպցիգի համալսարանում են ուսանել նաև մեր մշակույթի երախտավորներ, հայագետ Մանուկ Աբեղյանը, քիմիկոս Ստեփան Ղամբարյանը, գյուղատնտես Սարգիս Աբովյանը, գրականագետ Հակոբ Հարությունյանը, բանասեր Երվանդ Տեր-Մինասյանը, փիլիսոփա Հայկ Գյուլիքեխվյանը և ուրիշներ։

Լայպցիգի համալսարանում սովորելու տարիներին նույնպես Տեր-Պողոսյանը հենց առաջին օրերից աչքի է ընկնում իր արտակարգ ընդունակությամբ և աշխատասիրությամբ։ Դասախոսների ամենասիրած ուսանողներից էր, և պատահական չէ, որ համալսարանի երկու այլ ուսանողների հետ նա գործուղվում է Բեռլին՝ մասնակցելու ուսանողական կոնֆերանսներից մեկին։ Այստեղ էլ նա հանդիպում է իր համագյուղացի, արդեն հռչակավոր գիտնական, քիմիական գիտությունների դոկտոր, Ցյուրիխի համալսարանի պրոֆեսոր Հարություն Աբելյանին։ Ջերմ, հուզիչ հանդիպում էր դա, և Հայաստանից շատ հեռու, Գերմանիայի հողում, նրանց շուրթերից հորդում էր հարազատ ու դյութիչ մայ-

րենին:

Պրոֆեսոր Հ. Աբեղյանը երիտասարդ Տեր-Պողոսյանին մի քանի անգամ հրավիրում է Ցյուրիխ, հյուրընկալում իր տանը:

1908-ին Ավետիք Տեր-Պողոսյանը փայլուն գնահատականներով ավարտում է Լայպցիգի համալսարանը և մեկ տարի անց, 1909-ին, պաշտպանում դոկտորական դիսերտացիա: Ներեսունը դեռ չբոլորած երիտասարդ գիտնականը վերադառնում է հայրենիք: Սկսվում է գիտամանկավարժական բուռն և բեղմնավոր գործունեության շրջան:

Մանկավարժական իր մկրտությունը նա ստանում է Շուշիի թեմական դպրոցում, ուր դասավանդել է բնագիտություն: 1909—1911 թթ. նա այդ դպրոցի տեսուչն էր: Նրա ջանքերով և նյութական մեծ զոհողության գնով վերաբացվեցին հինգերորդ և վեցերորդ դասարանները:

Շուշիից նա հրավիրվում է Ալեքսանդրապոլի (այժմ Լենինական) Արդության հայ օրիորդաց դպրոց: Տեր-Պողոսյանը բնագիտություն է դասավանդել նաև Էջմիածնի Գևորգյան ճեմարանում, Թիֆլիսի Ներսիսյան դպրոցում, Երևանի ուսուցչական սեմինարիայում:

1920 թվականը շրջադարձային եղավ հայ ժողովրդի կյանքում: Նորաստեղծ խորհրդային իշխանությունը հնարավորություն ընձեռեց Հայաստանում համալսարան ստեղծել: 1920 թվականի դեկտեմբերի 28-ին բացվում է Երևանի համալսարանը: Հենց նույն օրն էլ հաստատվում են համալսարանի առաջին դասախոսները՝ Մանուկ Աբեղյան, Գրիգոր Ղափանցյան, Ավետիք Տեր-Պողոսյան և ուրիշներ:

Իրականանում է հայրենասեր գիտնականի և մանկավարժի տարիների երազանքը՝ բնագիտություն դասախոսել մայրենի լեզվով: Նա ստանձնում է նորաբաց կենսաբանական ֆակուլտետի դեկանի պարտականությունը, դասախոսում կենսաբանական առարկաներ: Երկար տարիներ նա դասախոսել է նաև Երևանի գյուղատնտեսական և բժշկական ինստիտուտներում, ինչպես նաև Բաքվի մանկավարժական ինստիտուտում:

Մինչև իր պայծառ ու լուսավոր կյանքի վերջը՝ 1954 թվականի մայիսի 18-ը, նա դասավանդեց Երևանի համալսարանի կենսաբանական ֆակուլտետում: 1929 թվականին նրան շնորհվեց պրոֆեսորի կոչում:

Ավետիք Տեր-Պողոսյանի գրչին են պատկանում շուրջ 50 գիտական աշխատություններ: Դարվինի ուսմունքի մասին, Հայաստանի կենդանական աշխարհի որոշ խմբերի ուսումնասիրությանը, ինչպես նաև կենսաբանությանը նվիրված բազմաթիվ այլ աշխատություններ, որոնց մի մասը հրատարակվել է նաև ռուսերեն և գերմաներեն:

Տեր-Պողոսյանը կազմել է նաև ուսումնական ձեռնարկներ: 1935 թ. լույս է տեսել նրա «Ընդհանուր կենսաբանություն», դասագիրքը՝ բարձրագույն ուսումնական հաստատությունների համար:

Անվանի գիտնականի և հայրենասեր մանկավարժի գիտական գործունեության փայլուն էջերից մեկը նրա վերջին հիմնարար աշխատությունն է՝ «Բիոլոգիական մտքի զարգացումը Հայաստանում սկզբից մինչև 18-րդ դարը», որը հրատարակվել է հեղինակի մահվանից հետո, 1960 թվականին: Մոտ երկու հազար տարվա ժամանակաշրջան ընդգրկող գիտական այդ վիթխարածավալ գործը կարող էր իրականացնել միայն բնագիտական բազմակողմանի ընդունակությունների տեր, մեր ոսկեղենիկ գրաբարին և մի շարք օտար լեզուների, ինչպես նաև բազմադարյան հայ մատենագրությանը քաջատեղյակ անձնավորությունը, որպիսին էր հենց նա ինքը:

Ավետիք Տեր-Պողոսյանի նախաձեռնությամբ և անմիջական ղեկավարությամբ հետազոտվել է մեր հանրապետության տարածքում եղած մեծ ու փոքր լճերի կենդանական աշխարհը: Նա առաջինն էր, որ նախաձեռնեց և կազմակերպեց Հայկական ՍՍՀ-ում տարածված գյուղատնտեսական բույսերի, վնասատու մի շարք կենդանիների ուսումնասիրությունը:

Բնագիտության հարցերից բացի հետաքրքիր են նաև Ավետիք Տեր-Պողոսյանի բանասիրական հոդվածները: Դեռևս 1906 թվականին «Արարատ» ամսագրում լույս է տեսել նրա հետաքրքիր մի հոդվածը՝ նվիրված ռուս հեղափոխական-դեմոկրատ բանաստեղծ Ն. Նեկրասովին: 1912 թվականին Ալեքսանդրապոլում հրատարակված առաջին պարբերականում՝ «Ախուրյան» թերթում, տպագրվել է նրա «Գրական ակնարկը»՝ անվանի հայ բանաստեղծ Հովհաննես Հովհաննիսյանի կյանքի և ստեղծագործության մասին:

Նրա աշակերտներն էին անվանի ակադեմիկոսներ Էզրաս Հասրաթյանը, Գագիկ Դավթյանը, Հրաչյա Բունիաթյանը, Գեղամ Աղաջանյանը, մի քանի տասնյակ գիտության դոկտորներ և թեկնածուներ:

ԱՍԱՏՈՒՐ ՓԱՇԱՅԱՆ

# ԺԱՄԱՆՑ

Ջրոսաշրջիկների մի խումբ ցանկանում էր անցնել գետի մյուս ափը: Խմբում կային երկու երեխա: Կար ընդամենը մի նավակ, բայց այնքան փոքր, որ նրանում տեղավորվում էր մեկ մեծահասակ մարդ կամ երկու երեխա:

Ինչպե՞ս զբոսաշրջիկներն անցան գետը:






Ավստրալիայի ափերի մոտ հաճախ են շնաձկներ հայտնվում: Վերջերս մի դեպք պատահեց:

Ավստրալիացի ձկնորսի որդի՝ տասնըվեցամյա Դինո Գիլմերը, նավակով դուրս եկավ բաց ծով:

Իհարկե, նա մտադիր չէր շնաձուկ որսալ: Բայց այնպես պատահեց, որ կարթը հենց շնաձուկ բռնեց, իսկ կարթաթելն այնքան ամուր էր, որ գիշատիչը չկարողացավ կտրել, փախչել:

Տղայի և շնաձկան միջև մենամարտը տևեց մեկուկես ժամ: Վերջապես Դինոնին հաջողվեց նավակը շնաձկան հետ միասին հասցնել ափ: Պարզվեց, որ դա սպիտակ շնաձուկ էր՝ 4,5 մետր երկարությամբ: Ինչպես հետո պատմեց Դինոն, այդ օրը հայրը իրեն նոր ձկնորսական սարք էր նվիրել: Նա չէր ուզենա կորցնել հոր նվերը:

---

## «ՊԻՈՆԵՐ» № 7-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

1. Կլիմով, 2. Մալյան, 3. «Կարինե», 4. Չապլին, 5. Համիկ, 6. Կարմեն, 7. Ֆյունես, 8. «Հայրիկ», 9. Կրամեր, 10. Նաումով, 11. Ֆելինի, 12. Լեոնով:
Գաղտնագիր— Լյումիեր

---

## ՈՒԶՈՒՄ ԵՆ ՈՒՆԵՆԱԼ ՀԱՅ ԲԱՐԵԿԱՄ

**Хатун Гогбандзе** (15 лет)
380102, Грузинская ССР, г. Тбилиси Глдани 5 м/р, 18 к, кв. 125.

**Гайяня Омарова** (15 лет)
483351, Казахсказ ССР, Алма-Атинская область, Талгарский р-он, с/з Фрунзе ул. Новостройка.

---



ԴԻԵԳՈ ՌԻՎԵՐԱ (1886—1957 թթ.)
«ԳՅՈՒՂԱԿԱՆ ԴՊՐՈՑ» 1928-1929 ԹԹ.
ՈՐՄՆԱՆԿԱՐ ՄԵԽԻԿՈՅԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՔԱՐՏՈՒՂԱՐՈՒԹՅԱՆ ՇԵՆՔՈՒՄ:

